լիոն մարքով մասնակցի երկրին ճարտարարուեստի վերելքին ։ Մտադրուած ծրագիրներէն է Միջերկրական ծովը կապել Լիբիոյ անապատին, այս ձեւով երկրին մշակելի հողերը զգալիօրէն պիտի աւելնան եւ միեւնոյն ատեն կարելի պիտի ըլլայ զարգացնել ճարտարարուեստը ։

Միջին եւ Ծայրագոյն Արեւելքի ժողովուրդները կ՚ուզեն իրենց ձայնը լսելի դարձնել ։

## "ՅԱՌԱՋ"Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն ·—
Տարեկան ·— 40 Ն· Ֆր· (4000)
Վեցամսեայ 22 Ն· Ֆր· (2200) ։
Արտասահման ·—
Տարեկան 50 Ն· Ֆր· (5000) ։
Բաժանորդագրութիւնները կը վճարուին կանխիկ ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Մառի Գասապեան կը ծանուցանէ թէ այս Կիրակի, Փարիզի Ս· Յովհ· Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իր ողբացեալ ամուսնոյն՝

ԱՐԱՄ ԳԱՍԱՊԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, ինչպէս նաեւ Տիկին Նազենի Գասապեանի եւ Գասապեան ու Քղեցեան գերդաստաններու յիշատակին ։

Կը հրաւիրուին իրենց յիշատակը յարգողները ։

### ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի 14 Փետրուար ժամը 17էն 24, տեղի կ՚ունենայ մեծ պատրաստութեամբ, Սիթէ Ունիվէրսիթէրի Հայ Ու· Տան պարահանդէսը՝ Վարդիվանեան նուագախումբի առաջնորդութեամբ ։

Հասոյթը պիտի յատկացուի Հայկ· Ուսանողական Տան դրադարանի, ինչպէս նաեւ սալերու ճոխացման ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ ·— Հ· Յ· Դ· «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր· 20ին, Շաբաթ երեկոյեան ։

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի) ։ Ապրիլ 17ին

×

ԴՊՐՈՑԱՍէՐԻ
Գեղարուեստական ցերեկոյթը
ՄԱՐՏ 27ԻՆ

×

Փարիզի Հաճնոյ Հայր· Միութեան տարեկան պարահանդէսը Մարտ 13ին, Կիրակի ժամը 16էն մինչեւ 24, Ամպասատէօրի շքեղ սրահին մէջ ։



Համբարձում Թափիպեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կարպիս Ալլավերտեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ժաք Ադեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Եդուարդ Սալմոն եւ զաւակները, կը ծանուցանեն իրենց կնոջ եւ մօր՝

ՎԻՔԹՈՐԻԱ ԹԱՊԻՊԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 21ին, իր բնակարանը, 64 Պուլվ· Տը Պէլվիլ, Փարիզ ։ Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այս Չորեքշաբթի առաւօտ, ժամը 10·30ին ։ Ալֆորվիլի Ս· Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ ։

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սահակ Գաբրիէլեան եւ զաւակները՝ Տէր եւ Տիկին Տէրոյեան շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք ցաւակցութիւն յայտնեցին իրենց կնոջ եւ մօր՝

ԱՆՆԱ ԳԱԲՐԻԷԼԵԱՆԻ
(Ծնեալ Նալպանտեան)

մահուան առթիւ ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ ·— Ֆ· Կ· Խաչի Լիոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները Նոր Տարւոյ եւ Ս· Ծննդեան առթիւ ·— Պ· Ս· Սանճեան (Վիլֆրանշ) հարիւր Ն· Ֆ·, Պ· Ծընկըրեան հարիւր Ն· Ֆ·, Այրի Տիկին Ի· Փափազեան յիսուն Ն· Ֆ·, Պ· Ն· Սանճեան երեսուն Ն· Ֆ·, Պ· Վ· Գամպէրեան քսան Ն· Ֆ·, Պ· Գ· Դաւիթեան քսան Ն· Ֆ·, Պ· Յ· Վարժապետեան տասը Ն· Ֆ·, Պ· Մ· Պայլէօզեան տասը Ն· Ֆ·, Պ· Մ· Քիւրքճեան տասը Ն· Ֆ·, Պ· Կ· Պետրոսեան տասը Ն· Ֆ·, Ոմն քսան Ն· Ֆ·, Ոմն երկու զառնուկ, Պ· Պահատուրեան երկու մեծ տուփ պիսկիւի, Պ· Կիւլպէնկեան երեք քիլօ շոքոլա, Կէնճեան եղբայրներ սնտուկ մը նարինջ ։

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ շինութեան ·— Տիկին Ռաքել Յովհաննէսեանէ իր ամուսնոյն ապաքինման առթիւ 100 Ն· Ֆ· ։ Պ· Արսէն Թէրզեանէ փոխան ծաղկեպսակի Կըընոպլէն հանգուցեալ Երուանդ Հաճըեանի մահուան առթիւ 50 Ն· Ֆ· ։



### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն· Ֆր· | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն· Ֆր· | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն· Ֆր· | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն· Ֆր· | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն· Ֆր· | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն· Ֆր· | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն· Ֆր· | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն· Ֆր· | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն· Ֆր· | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան ։



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)
ՄԱՐՏ 13 ԻՆ

ԵՌԶԿԱՏՑԻՆԵՐՈՒ ՕՐԱՑՈՅՑԸ
(1960)

Դիմել Պ· Ե· Աստանալեանի, 48 Րիւ տը լա Տեֆանս, ԻՍԻ ։



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Երեւանաբնակ Թոնիկ Խոստիկեան (ծնած 1920) Երեւան, հօրը անունը՝ Եղիշէ, մօրը Հռիփսիմէ, մեծ քոյրերը՝ Զարիկ, Գոհարիկ եւ փոքր եղբայրը՝ Վարդգէն ։ Կը խնդրուի արտասահմանի բոլոր հայ թերթերէն արտատպել ։ Կը խնդրուի տեղեկացնել, Հրաչեանին, 40 Ավընիւ տը լա Փըրիթ Սիւիս (Պօմոն), Մարսէյլ ։

### ԸՆԿ. ԲԱԼԱՅԵԱՆԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

*Բժիշկ Արտաշէս Բալայեան (Նիւ Եորք) կը խնդրէ մեզմէ յայտարարել թէ իր ողբացեալ եղբօր՝* Գերասիմ Բալայեանի *յուղարկաւորութեան, դամբարանի, տապանաքարի եւ այլ ծախքերը վճարուած են իր կողմէ :*

---

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250) : Դիմել *Յառաջի* հասցէով :

---

## ՀԱՅԱԾԷՍ Ս. ՊԱՏԱՐԱԳ ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

*Այս Կիրակի, ժամը* 10·30ին *, կէս օրէ առաջ, հայկական հանդիսաւոր Ս. Պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ձայնասփիւռէն :*

Միջին ալիք՝ 196 մ. :

Կարճ ալիք՝ 19·84, 25·67, 31·10 :

---

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները. — Ողբացեալ Տիկին Աննա Գաբրիէլեանի մահուան առիթով Տ. Խօսրով քհնյ. Ա. — սատուրեանէ եւ Պ. Տ. Տէրոյեանէ 10ական Ն. Ֆ. : Եւ Ողբացեալ Տիկին Հոփ — սիմէ Տէր Սիմոնեանի մահուան առիթով Սալնոյ Ջորի Հայր. Միութենէն 10Ն. Ֆ. :*

× *Երեւանէն Մանուշակ Համբարձումի Աւագեան կը փնտռէ իր հօրեղբայրը Թեւոս Թեւոսեան (կնոջ անունը Մարգրիտ), որ կը կարծուի Մարսէյլ գտնուիլ եւ նամակ ունի : Ստանալ եկեղեցիէն :*

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տիկին Ռոզ Հանըմեան, իր ամուսնոյն՝* Արտաւազդ Հանըմեանի *յիշատակին քսան Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին :*

---

### ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

*Կիրակի* 14 *Փետրուար ժամը* 17էն 24 *, տեղի կ'ունենայ մեծ պատրաստութեամբ,* Սիթէ Իւնիվէրսիթէրի *Հայ Ուս. Տան պարահանդէսը՝ Վարդիվանեան նուագախումբի առաջնորդութեամբ :*

*Հասոյթը պիտի յատկացուի Հայկ. Ուսանողական Տան գրադարանի, ինչպէս նաեւ սալերու ճոխացման :*

---

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ (ՇՈՐԳՈՆԻ ՄԷՋ)

## ՄԱՐՏ 13 ԻՆ

---



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ Եւրոպայի Կ. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վիէնի Անի կոմիտէն այս Շաբաթ իրիկուն ժամը* 21ին*, սովորական հաւաքատեղին :*

*Այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը* 15·30*ին* Տէսինի *կոմիտէն : Կը հրաւիրուին Փոն տը Շէրիւիի ընկերները :*

*Ներկայ կ'ըլլայ Կ. Կոմիտէին ներկայացուցիչը :*

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԼԻՈՆ. — Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր.* 20*ին, Շաբաթ երեկոյեան :*

*Սիփան — Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի) : Ապրիլ* 17*ին*

×

ԴՊՐՈՑԱՍէՐԻ

Գեղարուեստական ցերեկոյթը

ՄԱՐՏ 27ԻՆ

×

*Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան տարեկան պարահանդէսը Մարտ* 13*ին, Կիրակի ժամը* 16*էն մինչեւ* 24*, Ամպասատէօրի շքեղ սրահին մէջ :*



Imprimerie Spéciale du Journal « Haratch »



## 29ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

*կազմակերպուած շրջանին երէցներուն, սկաուտներուն եւ գայլիկներուն կողմէ,*
կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2·30ին,

**SALLE DE LA CHIMIE, 28 bis Rue St. Dominique**
**Paris 7·, Métro Invalides**

Ներկայացումներ սկաուտներուն կողմէ, երգեր եւ պարեր, հայկական պարեր, կենդանի պատկերներ եւ խաղեր գայլիկներէն : Ֆրանսերէն կը ներկայացուի՝

*« ԹՌՉՈՂ ՀՈՎԱՆՈՑԸ »*

*կատակերգութիւն, խմբապետուհիներուն կողմէ :*

*Մասնաւոր պատրաստութեամբ եւ բեմադրութեամբ,* Նախկին Հայ Արիները կը ներկայացնեն, *Հայերէն, Շէյքսփիրի հանրածանօթ կատակերգութիւնը :*

*ԸՆՏԱՆԵՑԱԾ ՋԱՏՈՒԿԸ*

**(La Mégère Apprivoisée)**

*Սիրայօժար մասնակցութեամբ եւ օժանդակութեամբ*

Շաւիլի Երիտասարդաց թատերախումբին :

*Պիւֆէ, ցուցադրութիւն* *Մուտք* 3 Ն. Ֆ. (300) *եւ* 5 Ն. Ֆ. (500)

ինչ կրնայ նորէն խնդրոյ առարկայ դառնալ :

× Ինչպէս նախապէս գրած էինք ըմբոստ պետերէն՝ Օրթիզ յաջողած է փախչիլ : Անպաշտօն լուրերու համաձայն առաւօտեան թերթերը կը հաղորդեն թէ ըմբոստ պետը Ալժերիայէն մեկնած է դէպի անծանօթ վայր մը , ուր նպատակ ունի շարունակելու կռիւը :

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Իւէն Ֆարչեան Նոյեմբերի ընթացքին մասնակցած է «O Ռօյօմ տը լա Միւզիք»ի տարեկան մրցումին ստանալով ասպէտի տիտղոսը :

Այս ուրբաթ Ֆրանս · Բ ·էն ժամը ժամը 18·20ին կարելի պիտի ըլլայ ունկնդրել երիտասարդ դաշնակահարուհին :

Պ. Արամ Զաքըրեան, Տէր եւ Տիկին Ժորժ Մինասեան, Այրի Տիկին Պարոյր Էլմասեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Էլմասեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արթին Մուրատեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Անդրանիկ Վարդուկեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գէորգ Աբրահամեան եւ զաւակները, Այրի Տիկին Նըշանեան եւ զաւակները, Այրի Տիկին Առաքելեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արթին Մինասեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Քէպապճեան, ինչպէս նաեւ Թիրիթեան, Փափազեան, Կարապետեան եւ Լանկլէ ընտանիքները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր, զաւկին, քրոջ, հօրաքրոջ եւ ազգականին՝

ՏԻԿԻՆ ԱՐԱՄ ԶԱՔԸՐԵԱՆԻ

(Ծնեալ Աստղիկ Էլմասեան)

մահը որ տեղի ունեցաւ Յունուար 30ին, 52 տարեկանին :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր՝ Հինգշաբթի ժամը 10·30ին, Ալֆորվիլի Ս · Պօղոս – Պետրոս եկեղեցին , ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Ժանթիյիի գերեզմանատունը , ամփոփուելու համար ընտանեկան դամբարանին մէջ :

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Շավիլի Հ · Յ · Դ · «Արդութեան» խումբի ընկերները եւ Կապ · Խաչի մասնաճիւղի ընկերուհիները ցաւակցութիւն կը յայտնեն ընկեր Միսաք Սարգիսեանի, իր եղբօր Վահրամ Սարգիսեանի ցաւալի մահուան առթիւ որ տեղի ունեցած է Պոլսոյ մէջ : Այս տխուր առթիւ ընկեր Միսաք Սարգիսեան քսան Ն ·Ֆ · կը նուիրէ Կապ · Խաչի Շավիլի մասնաճիւղին :

×

Շավիլի Եկեղեցական Ընկերակցութեան վարչութիւնը ցաւակցութիւն կը յայտնէ Պ · Միսաք Սարգիսեանի իր եղբօր ցաւալի մահուան առթիւ :

×

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ վարչութեան գանձապահուհի Օր · Մարի Պաղտասարեանի եւ ընկ · Պերճուհի Պաղտասարեանի, ինչպէս նաեւ ընտանիքի բոլոր պարագաներուն, Ալժերիոյ ճակատին վրայ ինկած տարաբախտ Միշէլ Պաղտասարեանի կսկծալի մահուան առթիւ :

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ձեռնարկուներ քօրսաժի համար, որ յանձն առնեն նաեւ կտրել : Դիմել՝

FRANCINE
38, RUE D'ABOUKIR · PARIS
1er étage gauche

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250) : Դիմել Յառաջի հասցէով :

### ՀԱՅԱԾԷՍ Ս. ՊԱՏԱՐԱԳ ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10·30ին , կէս օրէ առաջ, Հայկական Հանդիսաւոր Ս · Պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ձայնասփիւռէն :

Միջին ալիք՝ 196 մ · :

Կարճ ալիք՝ 19·84, 25·67, 31·10 :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Պ · Արթօ Հալէչեանի ամուսնութեան առթիւ, կնքահայրը՝ Պ ·Ազարիկ Անտոնեան 50 Ն · Ֆ · կը նուիրէ Ալֆորվիլի Կապոյտ Խաչի մասնաճիւղին :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սէնթ Անթուանի Ս · Թադէոս Եկեղեց · Թաղ · Խորհուրդը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները, փոխան ծաղկեպսակի Յարութիւն Գալայճեանի մահուան առթիւ : Պ · Մանուկ Մարտիկեան տասը Ն · Ֆ · եկեղեցւոյ, Տէր եւ Տիկին Մերկէր Սուքիասեան հինգ Ն · Ֆ · եկեղեցւոյ, հինգ Ն · Ֆ · Արծիւ խումբին, 5 Ն · Ֆ · Կապոյտ Խաչին :



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Փետրուար 18ի Համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Մարտ 5ին, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս : (Ալհամպրայի սրահներու մէջ), հովանաւորութեամբ Հ · Յ · Դ · Մարսէյլի Շրջ · Կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ · Յ · Դ · Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէի եւ Մարսէյլի «Շաւարշ Միսաքեան» երիտասարդ խումբին : Հանդէս եւ պարահանդէսով :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ .— Հ · Յ ·Դ · «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր · 20ին, Շաբաթ երեկոյեան :

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի) : Ապրիլ 17ին

×

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ

Գեղարուեստական ցերեկոյթը

ԱՊՐԻԼ 3ԻՆ

×

Փարիզի Հաճնոյ Հայր · Միութեան տարեկան պարահանդէսը Մարտ 13ին, Կիրակի ժամը 16էն մինչեւ 24, Ամպասատէօրի շքեղ սրահին մէջ :

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ · Յ · Դ · ԱՐԵՒՄՏԵԱՆ Եւրոպայի Կ. Կոմիտէն ընդհ · ժողովի կը հրաւիրէ Վիէնի Անի կոմիտէն այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

Այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15·30ին Տէսինի կոմիտէն : Կը հրաւիրուին փոն տը Շէրիւիի ընկերները :

Ներկայ կ'ըլլայ Կ · Կոմիտէին ներկայացուցիչը :

ՓԱՐԻԶ .— Հ · Յ · Դ · Շրջ · Կոմիտէն խմբական ժողովի կը հրաւիրէ «Քրիստափոր» խումբի ընկերները այս Երկուշաբթի, ժամը 21ին Մշակոյթի Տան փոքր սրահին մէջ : Պարտաւորիչ ներկայութիւն :

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

Ֆ · Կ · ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ · ժողովը այս Շաբաթ կէսօրէ ետք, ժամը 4ին, Տիկին Աղնիւ Գազազեանի բնակարանը, 6 Րիւ Սէն Սիւլբիս , Փարիզ (6), մէթրօ Օտէօն : Օրակարգ՝ պարահանդէսի հաշուետուութիւն, դրամաբոցական եւ ընթացիկ հարցեր : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ԱԼՖՈՐՎԻԼ — Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն մասնակից կ'ըլլայ Այրի Տիկին Աւագ Պաղտասարեանի եւ իր աղջիկներուն, Օրիորդներ Մարիի եւ Սիւզանի վիշտերուն, իրենց սիրեցեալ զաւկին եւ եղբօր՝ Միշէլ Պաղտասարեանի կորուստին առթիւ: (Զոհ գացած Ալժերիոյ ճակատին վրայ):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սէն Ժերոմի Թաղ. խորհուրդը խորին շնորհակալութեամբ ստացած է, ողբ. Յարութիւն Ժարկոչեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուէրները:

Տոքթոր Բաքըճեան, Մանուկ Գասպարեան, Հայկ Զուգուրեան, Այրի Տիկին Նարին Մակարեան, Յակոբ Մելքմէճեան, Սուրէն Մինասեան, Պառ Անթուան, Տիգրան Մուշեղեան, Մինաս Պօղոսեան, հազարական ֆր., իսկ Մկրտիչ Աւետիսեան, Թորիկ Նիկողոսեան, Հայկ Վարժապետեան, Յարութիւն Փանոսեան, Կարապետ Եսայեան 500ական ֆրանք, ի նպաստ եկեղեցւոյս:

Տոքթոր Բաքըճեան, Յակոբ Մելքմէճեան, Վարպետեան եղբարք, Ռուբէն Ասարլըքեան հազարական ֆր., Պ. Ժան Պառ Թինէլ երկու հազար ֆր. իսկ Աբրահամ Մանկասարեան 500 ական ֆր. ի նպաստ Թաղիս դպրոցին:

(Գումարները հին ֆրանքով):

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Ողբ. Յակոբ Ալանեանի Վիլըմոմպլի բարեկամները իր մահուան առթիւ կը նուիրեն քսան նոր ֆրանք, Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օղափոխութեան կայանին:

Նոր Տարուան առթիւ Հայ Կարմիր Խաչի բարենպատակ ձեռնարկներուն ի նպաստ կը նուիրեն.— Տոքթ. Եուսուֆեան քսան Ն. Ֆ., Պ. Պ. Սիմոնեան 20 Ն. Ֆ., Մուշմուլեան, Մարտիրոսեան, Կիմիւշեան տասնական Ն. Ֆ., Լեւոն Փանոսեան հինգ Ն. Ֆ.:

Հայ Կարմիր Խաչի տարեկան ցերեկոյթ պարահանդէսին առթիւ Ֆէսանվիլիէի օդափոխութեան կայանին կը նուիրեն.—

Ոմն 200 Ն. Ֆ., Պ. Կարպիս Հարիւր Ն. Ֆ., Իչքալացեան ընտանիք քսան Ն. Ֆ., Պ. Յակոբեան (Վիլ Ժիւիֆ) 20 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Ա. Աւագեան, Պ. Ա. Աճէմեան, Տէր եւ Տիկին Տէր Յովհաննէսեան քսանական Ն. Ֆ., Պ. Պէկլարեան 15 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Քիաթիպեան 15 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Ալէաթճեան, Տոքթ. Բաշայեան, Պ. Սիրունեան տասնական Ն. Ֆ.:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ձեռնարկուներ քօրսաժի համար, որ յանձն առնեն նաեւ կարել: Դիմել՝

FRANCINE
38, RUE D'ABOUKIR PARIS
1er étage gauche

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250): Դիմել Յառաջի հասցէով:

Գումարները ղրկել մանտա — քարտով միայն:

## Ի ՊԱՏԻՒ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾ ԽՈՐԷՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ

Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի Տիկնանց Օժանդակ մարմինը կազմակերպած է ընդունելութիւն մը այս Շաբաթ ժամը 17-ին, 11 Սքուառ Ալպոնի (մէթրօ Փասի), ի պատիւ ամերիկահայ քանդակագործ՝ ԽՈՐԷՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ, որ այս առթիւ չարժանկարով պիտի ներկայացնէ իր գործերը:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Կրընոպլի մասնաճիւղը՝ Պ. Ե. Հաճեանի մահուան տխուր առիթով, փոխան ծաղկեպսակի՝ շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Անտոնեանէ երեսուն Ն. Ֆ., ի նպաստ իր դպրոցին:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պանթէօ — Քաշանի Կապոյտ Խաչը շնորհակալութեամբ ստացած է տասը Ն. Ֆ. Այրի Տիկին Հերմինէ Յարութիւնեանէ, փոխան ծաղկեպսակի Այրի Տիկին Հռոմ Տէր Սիմոնեանի մահուան առթիւ:



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Փետրուար 18ի Համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Մարտ 5ին, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս: (Ալհամպրայի սրահներու մէջ), հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէի եւ Մարսէյլի «Շաւարշ Միսաքեան» երիտասարդ խումբին: Հանդէս եւ պարահանդէսով:

## — ՑՈՒՇԱՏԵՏՐ —

Ֆ. Կ. ԽԱՉի Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ կէսօրէ ետք, ժամը 4ին, Տիկին Ադնիւ Գազազեանի բնակարանը, 6 Րիւ Սէն Սիւլբիս, Փարիզ (6), մէթրօ Օտէօն: Օրակարգ՝ պարահանդէսի հաշուետուութիւն, դրամաբոցական եւ ընթացիկ հարցեր: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ԿԱՐՄԻՐ ԵՒ ԿԱՊՈՅՏ ԽԱՉԵՐՈՒՆ

Տիկին Սիրարփի Սանթուրճեան, իր ողբացեալ ամուսնոյն, Ջօհրապ Սանթուրճեանի մահուան 7րդ տարելիցին եւ իր մօր Տիկին Կիւլիկ Հալէպլեանի մահուան 15րդ տարելիցին առթիւ, յիսուն Ն. Ֆ. Կապոյտ Խաչի եւ յիսուն Ն. Ֆ. Կարմիր Խաչի կը նուիրէ: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՀԱՅԱԾԷՍ Ս. ՊԱՏԱՐԱԳ ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս կիրակի, ժամը 10·30ին, կէսօրէ առաջ, հայկական հանդիսաւոր Ս. Պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ձայնասփիւռէն:

Միջին ալիք՝ 196 մ.:

Կարճ ալիք՝ 19·84, 25·67, 31·10:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ Եւրոպայի Կ. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վիէնի Անի կոմիտէն այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

Այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15·30ին Տէսինի կոմիտէն: Կը հրաւիրուին փոն տը Շէրիւիի ընկերները:

Ներկայ կ'ըլլայ Կ. Կոմիտէին ներկայացուցիչը:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն խմբական ժողովի կը հրաւիրէ «Քրիստափոր» խումբի ընկերները այս Երկուշաբթի, ժամը 21ին Մշակոյթի Տան փոքր սրահին մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն:

## Կ'ՈՒԶՈՒԻ

25 հոգինոց հաստատութեան մը մէջ աշխատելու համար (ներքին գործեր, տան մաքրութիւն եւ լուացք), կ'ուզուի միջին տարիքի աշխոյժ կին մը: Բնակարան, սնունդ եւ վարձատրութիւն:

Անձամբ դիմել «Յառաջ»ին:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Ձավէն Թադոսի Պօղոսեան կամ Եզրեան, մայրիկի անունը Աննա, ծնած է 1917ին, Դամարլայի շրջան, գիւղ Յունկա, տեղեկացնել «Յառաջ»ին:

×

Մարկարեան Վիքթորիա Բաղրամի փնտռում է հօրեղբայրը Յակոբ Սարգիսի Մարգարեանը, որ1931ին Ռոստովից մեկնել է արտասահման: Մօտաւորապէս 75 տարեկան: Փնտռողը կը բնակի Երեւան քաղաքում Մոսկովեան Պրոյեզդ տուն, թիւ մէկ բնակարան, Նեռոնովա Վիքթորեայ:



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

# ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ ԱՆԱՍԵԱՆԻ

Բ.

Անասեան, որակելու համար իր աշխատութեան առարկան, իբրեւ գիտական տարազ՝ կը նախընտրէ գործածել «մատենագիտութիւն» բառը։ Եւ այս առթիւ, իբրեւ բացատրութիւն ու վկայութիւն, կը գրէ.

— Մատենագիտութիւն բառը նշանակում է «մատեանների գիտութիւն» եւ կազմուած է մատենագէտ բառից, որը Ե. դարից է գալիս։ Հայկազեան բառարանների բացատրութեամբ՝ մատենագէտ նշանակում է «գիտակ եւ հմուտ մատենից», կամ՝ «գիտակ մատենից եւ դպրութեանց». եւ իրօք այդ նշանակութեամբ էլ գործածուած է Աստուածաշնչի Հայերէն Թարգմանութեան մէջ» (Եզեկ. Իէ. 9)։

Վկայութիւնը սխալ է ընտրուած։ Եզեկիէլի գիրքին մէջ «մատենագէտ» բառը գործածուած չէ այդ նշանակութեամբ, ոչ ալ ... ուրիշ իմաստով՝ ըստ բնագրին, նոյնիսկ ըստ նախադասութեան պահանջին։

Այլ կալուածի մը մէջ, փարամոմիա կը կոչուի սխալը, զոր կը կատարէ մարդ՝ երբ հաց կ'անուանէ քարը կամ սոխ կ'անուանէ տանձը։ Այս տեղ սխալը կը ծագի տարբեր պատճառէ մը։ Ի՞նչ է պատճառը, որ Աստուածաշունչ Մատեանի Հայ Թարգմանիչը «մատենագէտ» բառն է դրեր հոն՝ ուր բնագիրը կը դնէ ... քաղաքի մը անունը։

Թէ Աստուածաշունչ Մատեանի առաջին հայերէն Թարգմանութիւնը կը հետեւի ասորերէն օրինակին, (յետոյ վերաքննուած է եւ «բարեփոխուած» ըստ յունական օրինակին), տեսակէտ մըն է որ կը գոհացնէ զիս։ Վէճի նիւթ պիտի չդարձնեմ, այլեւս, թէ ո՞ր օրինակն է նուազ խաթարուածը, «ստոյգը» կամ «ճշգրիտը» լեզուական տեսակէտով, եբրայակա՞նը, ասորակա՞նը թէ յունականը, — իրար կ'արժեն բոլորն ալ։ Զիս կը հետաքրքրէ այն իրողութիւնը միայն թէ Աստուածաշունչ Մատեանը հայերէնի թարգմանուած չէ մէկ անգամէն եւ ամբողջովին։ Ու կը թուի թէ սքանչելի հայագէտի մը վիճակուած էր «ի հայ լեզու փոխել» Եզեկիէլի գիրքը՝ հետեւելով յունարէն օրինակին, մրցումի հանելով յունարէն եւ հայերէն լեզուներու բառամթերքի ճոխութիւնը։

Այստեղ քննութեանց առարկայ է Եզեկիէլի գիրքին այն գլուխը(*), ուր «Բուզեայ որդին» կը մարգարէանայ Տիւրոսի կործանումը.—

Միջերկրական ծովին այս գոհարը, զոր հայերէն Թարգմանութիւնը կ'անուանէ Ծուր, մարգարէն կը նմանցնէ չքեղ նաւի մը, որու առագաստներն անգամ շինուած էին եգիպտական բեհեզէ, ամպհովանիները՝ կապուտակ ու ծիրանեգոյն կերպասէ, թիակները՝ Բասանի կաղնիներէն, կայմը՝ Լիբանանի եղեւնափայտէն, նստարանները՝ տօսախէ, փղոսկրով դրուագեալ։ Պերճ նկարագրութիւն մը, պերճաբարբառ հայերէնով մը տրուած։

Այս գոհար քաղաքին ճոխութիւնը նըկարագրելով՝ Եզեկիէլ մի առ մի կը յիշատակէ բոլոր այն ժողովուրդները, որոնք առուտուր ընելու կուգային մինչեւ Միջերկրականի արեւելեան աւազանը, եւ Ծուր։ Այդ ժողովուրդներու կարգին՝ նաեւ ... Հայերը, ինչպէս կ'ըսեն մեկնիչները. «Եւ ի տանէ Թորգոմայ ձիովք եւ հեծելովք եւ ջորւովք լցին զվաճառս քո»։ Նաեւ Գեբաղացիք, առաջնակարգ ճարտարապետներ, որոնց շինարարական տաղանդին վկայութիւն կուտան արդի պեղումները։ Ծիւնիքէն վեր, լերան ու ծովին կազմած մահիկներէն անդին, — ի՜նչ հոյատեսիլ պատկեր՝ զոր անգամ մը տեսնողը ա՛լ չի մոռնար սքանչացումի եւ յափշտակութեան պահը, — հին քաղաք մըն է Գեբաղացւոց հայրենիքը, այժմ աւերակ, որուն կռնակն ի վեր կը բարձրանայ լեռը, Ադոնիսի հէքեաթներուն աշխարհը։

Այդ քաղաքը կը կոչուէր Գեբալ, — սեմական երեքգրեան (թրիլիթէռ) բառ մը (կը գրուի գիմէլ, բէթ, լամեդ տառերով), արաբական ձեւով՝ ճեպալ (կը գրուի ճիմ, պէ, լամ տառերով), կամ ճիպէյլ, ինչպէս ծանօթ է մեր որբերուն՝ իրենց որբանոցային կեանքին մէջ։

Գեբալ, հայերէն տառադարձուած ձեւով՝ Գեբաղ, ըստ իր արմատական նշանակութեան՝ բայ մըն է որ ունի ոլորել իմաստը, ինչպէս չուանը։ Արդարեւ, սկզբնաբար կը նշանակէր պարան։ Սովորութեան մը պատճառով, հողային սահմանները գծելու համար՝ միշտ պարան գործածելով, ի վերջոյ բառը ստացաւ սահման, եզր, նոյնիսկ կատար իմաստները, որովհետեւ լեռները, իրենց շղթայով, կը գծէին հորիզոնը՝ մէկ կատարէն միւսը։

Գեբալ, այսպէս, ստացաւ իր վերջնական բառարանային նշանակութիւնը, լեռ։

Աստուածաշունչ Մատեանին մէջ շատ է գործածուած Գեբաղ անունը, յաճախ իբրեւ անձնանուն (Ա. Մնաց. Ա. 22 եւ այլուր, ուր երբեմն «ի մեղ գրի Գեբէլ», նոյնիսկ Կամաան)։ Իբրեւ աշխարհագրական անուն՝ ծանօթ են այլ Գեբաղներ, առաւել կամ նուազ չափով հռչակաւոր, բայց ամէնէն հռչակաւորն է այն որ, հելլենական տիրապետութեան շրջանին եւ հելլենական մատենագրութեան մէջ, կոչուած է նաեւ Բիբլոս։

Ուրեմն սեմական Գեբաղ քաղաքը եւ հելլենական Բիբլոս քաղաքը նոյն քաղաքներն են, առանց տարակուսութեան(**)։

Գեբաղ բառին ստուգաբանութիւնը տըւինք արդէն։ Գալով Բիբլոս անուան, պէտք է գիտնալ թէ ոչ մէկ կապ ունի բիբլոս բառին հետ, յունարէն՝ մատեան կամ գիրք նշանակութեամբ, (Բիբլոս անուան բացատրութիւնը՝ քիչ ետքը)։

Հայերէն Աստուածաշունչ Մատեանին Թարգմանիչը, մեր սքանչելի հայագէտը, օտար լեզուի մէջ տկար թերեւս, Բիբլոս քաղաքին անունը կրող Բիբլացիքը թարգմաներ է ... «մատենագէտք»։

«Եւ ծերքն մատենագէտք (փոխանակ Բիբլոսի) եւ իմաստունք նորա որ էին ի քեզ, նոքա զօրացուցանէին զխորհուրդս քո...» (Եզեկ. Իէ. 9)։

Ճիշդ է թէ շատ խաթարուած է Եզեկիէլի գիրքը, ըլլայ յունարէնը, ըլլայ եբրայերէնը կամ ասորերէնը։ Բայց անընդունելի է մատենագէտք թարգմանել Բիբլացիքը։ Այս վերջին ձեւով թարգմանուած վկայութիւն մը կը գտնենք այլ տեղ (Գ. Թագ. Ե. 18)։

Պատկերազարդելու համար մեր այս սրբագրութիւնը, կ'աւելցնենք պատմական – դիցաբանական հետեւեալ ծանօթութիւնները.—

Հեթանոսական սուրբ քաղաք մըն էր Գեբաղը, Ճիպէյլը կամ Բիբլոսը։

Հելլէնները դիցաբանական աւանդութեան մը կը կապեն իր հիմնարկէքը։

Բիբլիս կը կոչուէր գեղանի աղջիկ մը, Կօնոս՝ իր եղբայրը։ Եղո՜ւկ, քոյր եւ եղբայր սիրահարեցան իրարու՝ մեղաւոր սէրով մը։ Օր մըն ալ, եղբայրը, խղճահար եւ ամօթահար, փախաւ ելաւ լեռները, իսկ քոյրը, յուսահատ եւ խենթեցած, փնտռելու գնաց ետեւէն եւ այն պահուն՝ երբ անդունդ կը նետուէր ժայռէ մը վար, աստուածներուն գթութեամբ՝ կերպարանափոխուեցաւ ու դարձաւ առուակ մը, որու ջուրը չի սպառիր երբեք, ինչպէս չսպառեցան երբեւիցէ դժբախտ աղջկան արցունքները։ Ի յիշատակ այս աղջկան՝ ժողովուրդը Բիբլոս կոչեց փիւնիկեան քաղաքը, որու հարաւէն կ'անցնէր ծանօթ գետակը (այժմ Նահր Ֆետար)։ Այդ գետը կը կոչուի նաեւ Ադոնիս, որու պատմութեան կապուած է դիցաբանական այլ սիրուն հէքեաթ մը.—

Հրաշագեղ աղջիկ մըն էր Զմիւռնան, այնքան գեղեցիկ՝ որ մայրը պարծենցաւ թէ աստուածուհիներուն մէջ անգամ չկար նմանը։ Կատղեցաւ դիցուհին Աֆրոդիտէ, որ աղջկան սիրտին մէջ վառեց մեղաւոր սիրոյ մը կրակը՝ այն ձեւով որ ծանօթ է Ղովտի աղջիկներուն (Ծննդ. ԺԹ. 31 – 36)։ Տասներկու գիշեր՝ սիրահարները, առանց իրարու ինքնութիւն ճանչնալու, ըմպեցին սիրոյ գինին։ Բայց երբ արթնցաւ հայրը եւ իմացաւ գործուած մեղքը, սուր ի ձեռին՝ հալածեց աղջիկը։ Աստուածները մեղքցան եւ պաշտպանեցին Զմիւռնան՝ զայն կերպարանափոխելով զմուռսի ծառի։ Տասը ամիս ետքը, ծառին կեղեւները բացուեցան եւ ծառին ընդերքէն դուրս խոյացաւ պատանի մը, անհամա՜ն գեղեցկութեամբ, որ կոչուեցաւ Ադոնիս, թարգմանի՝ Տէր։ Աֆրոդիտէ եւ Պերսեփոնէ դիցուհիները սիրահարեցան պատանիին ու կռիւ ըրին իրարու հետ։ Աստուածահայրն Արամազդ հրաման ըրաւ որ տղան չորս ամիս ապրի Աֆրոդիտէի հետ, չորս ամիս՝ Պերսեփոնէի հետ, տարւոյն մնացեալ մասն ալ՝ տղան ինչպէս կամենայ։ Այս անգամ նախանձեցաւ Արտեմիս դիցուհին, որ վրէժխնդրօրէն վարազ մը հանեց Ադոնիսի դիմաց՝ երբ որսի ելած էր ան։ Վարազը վիրաւորեց Ադոնիսը, որ մեռաւ, — իր արի՜ւնն է որ կը հոսի, կ'ըսեն տեղացիները, երբ, ձիւնհալքին, Ադոնիս գետը, կարմիր հողէն (կ'ըսեն՝ երկաթ կը պարունակէ) գունաւորուած, արիւնի գոյն առած, կ'իջնէ դէպի ծով։ (Ուրիշ հէքեաթ մը, զոր հրատարակած եմ այլուր, կ'աւանդէ թէ Աֆրոդիտէ, իմանալով Ադոնիսի վիրաւորուիլը, կը վազէ հերարձակ ու բոկոտն, կ'ուզէ օգնութեան հասնիլ, երբ փուշը կը խայթէ գարշապարը, կը հոսի արիւնը եւ սիրոյ դիցուհիին արիւնով՝ կը կարմրին վարդերը, որոնք ճերմակ էին սկզբնաբար)։

Ի վերջոյ, Փիւնիկեան այս քաղաքը, Բիբլոս, որ, կը կրկնեմ, ոչ մէկ կապ ունի բիբլ բառին հետ (= Աստուածաշունչ Մատեան կամ պարզապէս մատեան), ոչ ալ ... մատենագիտութեան հետ, դարձած էր հռչակաւոր սուրբ քաղաք մը, ուր ուխտագնացութեան կ'երթար ժողովուրդը՝ գարնան եղանակին, ձիւնհալքին, ու ծիսական արարողութիւններ ու խրախճանքներ կը կատարէր գետին եզերքը։

Այստեղ ծնած է Փիլոն Բիբլացին։ Վերջապէս Եգիպտացիք «աստուածներու երկիր» կ'անուանէին Բիբլոսը կամ Գեբաղը, աւելի ճոխ, աւելի փարթամ, աւելի հռչակաւոր քան Տիւրոսը։

Վերադառնալով մեր նիւթին, — Աստուածաշունչ մատեանի հայ Թարգմանիչը, կարդալով «Բիբլացի ծերերը», յունարէն բացատրութիւնը, թարգմանած է «մատենագէտ ծերերը», — եւ Յ. Անասեան եւս այս «մատենագէտ» բառն է որ վկայութեան կը կանչէ՝ ըսելու համար թէ «մատենագէտ նշանակում է գիտակ եւ հմուտ մատենից», թէ այս իմաստով ալ գործածուած է Ե. դարուն մէջ։ Ըսինք թէ Գեբաղը կամ Բիբլոսը ներկայացնողները ոչ թէ մատենագէտ էին, այլ առաջնակարգ վարպետներ ճարտարապետութեան։ Թէ «մատենագէտ» բառը, բնագրին համապատասխան կամ ոչ, գործածուած է Ե. դարու հայ լեզուին մեծ վկայարանին մէջ՝ ճիշդ է։ Բայց թէ ի՛նչ կը նշանակէր, ա՛յդ է որ պիտի բացատրեմ յաջորդով։

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

---

(*) Շատ հետաքրքրական դէմք մըն է այս Եզեկիէլը, որ մարգարէանալու համար՝ կը պառկի գետնատարած, 190 օր ձախ կողմին վրայ, եւ 40 օր՝ աջ կողմին վրայ, ու չուաններով կը կապէ իր մարմինը՝ որպէսզի դիրք չփոխէ աջ կամ ձախ կողմին վրայ պառկելու ժամանակ։ Եզեկիէլ ուսումնասիրուած է նաեւ իբրեւ հոգեախտաբանական առարկայ։

(**) Կրնայ պատահիլ որ, օր մը, լեզուաբանութիւնը հաստատէ թէ Բիբլոս կը ծագի փիւնիկեան բառէ մը, կամ խնամութիւն մը տեսնէ Գեբաղ ու Բիբլոս բառերուն միջեւ։

# ԳԵՂԱՆԻ ԿԱՅՍՐՈՒՀԻՆ

(ՉԻՆԱԿԱՆ ԿԵԱՆՔԷ)

Ներքինապետը շուտով կը գտնէ Եէ Խօ Նօ Լայի հաւատարիմ սիրահարը, որ ըղբաղած էր իր գլուխը հաւաքելու իրեն նուիրուած կտրիճներ, անոնցմէ խումբ մը կազմելով ի հարկին օգնութեան հասնելու համար իր երազներուն եւ իր տենչանքներուն առարկայ էակին։

Եոնկ Լու երբ վերահասու կ'ըլլայ եղելութեան եւ կը համոզուի որ իր սիրած էակը ենթարկուած է ահաւոր փորձանքի մը, իր հետ առնելով կտրիճներու ըստուար խումբ մը, խելայեղ արշաւով կը մեկնի դէպի Քու Փէ Քէուի կիրճը, ուր տեղի պիտի ունենար աւազակային անարդ յարձակումը՝ երկու կիներու վրայ։

×

Երկու կայսերական այրիները, որոնք նախկին հակառակորդներ էին եւ այժմ դարձած էին սրտակից բարեկամներ, միեւնոյն կառքին մէջ նստած, կը ճամբորդէին ուրախ ու զուարթ։

Վայրկեան մը իսկ չէին կասկածեր այն ահաւոր վտանգին մասին, որ կը սպառնար իրենց երկուքին ալ կեանքին. եւ սակայն Եէ Հօ Նօ Լա, բացատրեց իր ընկերուհիին եւ պարզեց այն բոլոր անախորժութիւնները որոնք յառաջ կրնային գալ եթէ երեք դաւադիրները Փեքինի մէջ յաջողէին իրենք զիրենք ընդունիլ տալ իբրեւ օրինական խնամակալները կայսերական գահուն։ Անպայման, կ'ըսէր խելացի հարճը, երբ անգամ մը անոնք ձեռք ձգէին գերագոյն իշխանութիւնը, իրենց առաջին գործը պիտի ըլլար մէջտեղէն վերցնել հանգուցեալ կայսեր երկու եղբայրները՝ իշխան Քունկը եւ իշխան Զուէնը որ ամուսնացած էր, ինչպէս գիտենք, Եէ Հօ Նօ Լայի քրոջ հետ։ Անոնցմէ ետք, անկասկած, նորելուկ խնամակալները պիտի աշխատէին մէջտեղէն վերցնել կայսերական գերդաստանին այն բոլոր միւս անդամները որոնք պիտի ուզէին իրենց ծրագիրներուն իրագործման արգելք հանդիսանալ։ Եւ աւելին, հանգուցեալ կայսեր երկու այրիները պիտի արժանանային նոյն ցաւագին բախտին։

Առ այժմ, սակայն, կ'ըսէր հարճը, անմիջական վտանգ չկար եւ կարեւորը այն էր որ կարողանային առանց որեւէ խոչընդոտի հասնիլ Փեքին եւ արժանանալ ժողովրդային զուրգուրանքի եւ յարգանքի, որ զիրենք պիտի դարձնէր անխոցելի, որեւէ խնամակալութեան առջեւ։

Մինչ այսպէս խօսելով երկու կիները իրենց ճամբան կը շարունակէին, յանկարծ, երբ Քու Փէ Քէուի կիրճին առջեւ հասած էին, երկու այրիները իրենց կառքին դռնակէն տեսան աւազակային դէմքով մարդիկ, որոնք շրջակայ ժայռերէն դուրս գալով, սկսած էին յարձակիլ իրենց կարաւանին վրայ։

Այն մէկ քանի զինուորները զորս դաւադիր խնամակալները յատկացուցած էին երկու կիներուն պաշտպանութեան, յարձակման առաջին իսկ պահուն քաջաբար դիմադրելէ ետք, հետզհետէ ինկան դիտապաստ, յարձակող աւազակներուն գերազանց թիւին պատճառով։

Սոսկումէն կայծակնահար, Եէ Հօ Նօ Լա եւ իր ընկերակիցը ականատես եղան իրենց պահակներուն սպանութեան եւ դողահար տեսան որ աւազակները հիմա կը յառաջանային դէպի իրենց կառքը։

Երկուքն ալ արդէն համոզում գոյացուցած էին որ իրենց վերջին ժամը հասած էր եւ կը սպասէին մահուան, երբ յանկարծ, ահեղագոռ փոթորիկի մը նման, ձիաւորներու խումբ մը քառասմբակ արշաւով մը հասնելով դէպքին վայրը, յարձակեցաւ աւազակներուն վրայ եւ անխնայ ջարդ մը տալով այս վերջիններուն, տէրը դարձաւ կացութեան։

Եւ երբ հրապարակը բոլորովին մաքրուած էր մարդասպան աւազակներէն, ձիաւորներուն պետը մօտեցաւ կառքին յարգանօք բարեւելու համար երկու իշխանուհիները որոնց կեանքը փրկած էր։ Եէ Հօ Նօ Լա սրտագեղ յուզումով մը ճանչցաւ իր սիրական Եոնկ Լուն։

Ու համակուած ուրախութեան, երախտագիտութեան եւ սիրոյ զգացումներով, գեղանի հարճը նետուեցաւ իր ազատարարին թեւերուն մէջ։

Մէկ քանի օր ետք, պատգամաբեր մը հասաւ դանդաղօրէն յառաջացող կայսերական մեռելակառքի թափօրին եւ երեք կարծեցեալ խնամակալները ստացան նամակ մը Եէ Հօ Նօ Լայէն, որով երիտասարդ հարճը կը յայտնէ թէ, առանց դոյզն խոչընդոտի ու արկածի, ինքը եւ կայսեր կողակիցը հասած էին մայրաքաղաք։ Իր նամակին մէջ հարճը որեւէ ակնարկութիւն չէր ըներ այն յարձակման մասին որուն ենթարկուած էին ինքը եւ կայսրուհին Քու Փէ Քէուի կիրճին առջեւ, եւ ուրկէ ազատած էին գրեթէ հրաշքով։ Դարձեալ իր նամակին մէջ, Եէ Հօ Նօ Լա երեք դաւադիրներուն կը մաղթէր խաղաղ ճամբորդութիւն մը եւ կը խնդրէր անոնցմէ որ անյապաղ իրեն ուղարկէին իր զաւակը, նոր կայսր Զունկ Զէն, որուն անչափահասութիւնը թոյլ չէր տար որ հետեւէր յոգնեցուցիչ ու դանդաղ ճամբորդութեան։

(11 Շար.)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Տէր եւ Տիկին Ն. Հէլվաճեան, Այրի Տիկին Մաքրուհի Փափազեանի (Մոնփելլիէ) մահուան քառասունքին առթիւ քսան Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ սրահին: (Ստանալ «Յառաջ»էն) :

×

Այրի Տիկին Քէնտիրեան յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան, իր ամուսնոյն Ոսկան Քէնտիրեանի յիշատակին : (Ստանալ «Յառաջ»էն) :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէրի Տիկ. Վարժարանի Ծընողներու Միութիւնը ստացած է Գալուստ Կիւլպէնկեան հիմնարկութենէն 800 տոլարի նուիրատուութիւն մը :

Այս գումարը կը ներկայացնէ Ծնողական Միութեան նախաձեռնութեամբ գնուած նոր գրասեղաններուն, մահճակալներուն եւ անկողիններու ամբողջ ծախքին կէսը, միւս կէսը 800 տոլար եւս ապահոված է Հ. Բ. Ը. Միութեան նախագահը՝ Պ. Ալէք Մանուկեան :

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Պ. Արամ Զաքրեանի, Տէր եւ Տիկին Պարոյր Մինասեանի, Այրի Տիկին Էլմասեանի, Տէր եւ Տիկին Ժիրայր Էլմասեանի, Տէր եւ Տիկին Յ. Մուրատեանի, իրենց կնոջ, մօր, աղջըկան, քրոջ, եւ ազգականին ընկերուհի Աստղիկ Զաքրեանի (ծնեալ Էլմասեան) ղառնաղէտ մահուան առթիւ :

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ֆ. Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղի վարչութիւնը քսան Ն. Ֆ. կը նըւիրէ Կապոյտ Խաչի օգափոխութեան կայանին : (Ստանալ «Յառաջ»էն) : Տէր եւ Տիկին Բենիամին Մուրատեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն, Փորթ տ'Իթալիի մասնաճիւղին :

Պ. Յ. Տէր Յովհաննէսեան տասը Ն. Ֆ. կը նուիրէ Ժանթիյիի հայկական դպրոցին : Պ. Սարգիս Էֆխանեան տասը Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի տան : (Ստանալ «Յառաջ»էն) :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Հայկանոյշ Կոստեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Լանկլէ Կոստեան, Պ. Ն. Զաքարեան եւ զաւակները խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք ծաղկեպսակով եւ նուիրատուութեամբ, հեռագրով եւ նամակով ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ Լեւոն Կոստեանի կսկծալի մահուան առթիւ (58 տարեկան, Մշոյ Առախ գիւղէն) :

Փոխան ծաղկեպսակի Տէր եւ Տիկին Զաքարեան կը նուիրեն՝ 40 Ն. Ֆ. Փարիզի զոյգ ծերանոցներուն, 20 Ն. Ֆ. Սէն Ռաֆայէլի ծերանոցին : (Ստանալ Մարսէյլի Ազգատախնամի նախագահէն՝ Պ. Փափազեանէ) :

### ՆՈՒԷՐ

Վիլմոմպլէն Պ. Ալանեանի մահուան առթիւ, իր բարեկամները քսանական Ն. Ֆ. կը նուիրեն Դպրոցասէրին եւ Կապոյտ Խաչին : (Ստանալ «Յառաջ»էն) :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ

Գեղարուեստական ցերեկոյթը
ԱՊՐԻԼ 3ԻՆ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ
ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

### Կ'ՈՒԶՈՒԻ

25 հոգինոց հաստատութեան մը մէջ աշխատելու համար (ներքին գործեր, տան մաքրութիւն եւ լուացք), կ'ուզուի միջին տարիքի աշխոյժ կին մը : Բնակարան, սնունդ եւ վարձատրութիւն :

Անձամբ դիմել «Յառաջ»ին :

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 ֆրանք (հին ֆրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250) : Դիմել Յառաջի հասցէով :

Գումարները ղրկել մանտա – քարտով միայն :

### ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի տարեկան ցերեկոյթ պարահանդէսին առթիւ Ֆէսանվիլիէի օգափոխութեան կայանին կը նուիրեն .— Պ. Էգնայեան քսան Ն. Ֆ., Տոքթ. Քիթապճեան, Պ. Պ. Հրաչեան, Ե. Սարաֆեան, Պահթիարեան, Տէր եւ Տիկին Սարաֆեան (Պէլվիլ), Միլօշեան ընտանիք (Մօրսան), Պ. Պ. Պահարեան, Օ. Սէֆէրեան, Լիտան Հաստատութիւն, Պ. Աթապէկեան տասնական Ն. Ֆ. :

×

Պ. Արամ Գասապեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի, Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օգափոխութեան կայանին կը նուիրեն 35 Ն. Ֆ. Պուա Քոլոմպէն՝ Տիկիններ՝ Մ. Առաքելեան, Մ. Եաղուպեան, Հ. Գարաօղլանեան, Հ. Վէգիրեան, Դ. Ֆընտըքեան եւ Օր. Ն. Սարաֆեան :

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ստիպողաբար խմբական ժողովի կը հրաւիրէ Փարիզի «Րաֆֆի» խումբի ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, Բէժանի վերնայարկը .— մեթրօ Քատէ : Կարեւոր օրակարգ : Պարտաւորիչ ներկայութիւն :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն խմբական ժողովի կը հրաւիրէ «Քրիստափոր» խումբի ընկերները այս Երկուշաբթի, ժամը 21ին Մշակոյթի Տան փոքր սրահին մէջ : Պարտաւորիչ ներկայութիւն :

### ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Մարտ 5ին, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս : (Ալհամպրայի սրահներու մէջ), հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէի եւ Մարսէյլի «Շաւարշ Միսաքեան» երիտասարդ խումբին : Հանդէս եւ պարահանդէսով :

նայ ապահովութեան ուժերու կարեւոր ջոկատ մը։ Խօսք առնելով Հաւանայի մէջ Խ. Միութեան փոխ-վարչապետ քաջալերական խօսքեր ըսած է Ֆ. Գասթրոյին եւ ապա աւելցուցած .— «Անոնք որ կը սպառնան մեր դէմ, պէտք է մէկ բան մտաբերեն։ Եթէ յաջողեցանք դէպի լուսին մեծ ճշգրտութեամբ արձակել դերհրթիռ մը, ապա շատ դիւրին պիտի ըլլայ որ նման ճշգրտութեամբ հրթիռներ արձակենք աշխարհի որեւէ մէկ մասին վրայ», խօսքի շարունակութեանը մէջ՝ Միկոյեան ըսած է «Մեր ժողովուրդը ձեր կողքին է, մեզ օժանդակ ունենալով ձերկառավարութիւնը հրաշքներ կրնայ գործել» ։

Ուաշինկթընի պաշտօնական շրջանակները դիտել կուտան որ Միկոյեանի ճամբորդութիւնը կը հետամտի երեք հիմնական նպատակներ ։ Ընձեռել զինուորական եւ տնտեսական օժանդակութիւն, զարգացնել առեւտրական կապը երկու երկիրներուն միջեւ եւ վերջապէս դիւանագիտական բնականոն յարաբերութիւններ հաստատել երկու երկիրներուն միջեւ ։

Ֆրանսական ձայն-պատկերասփիւռը կիրակի իրիկուն, կը հաղորդէր թէ անուանի երաժիշտ Արամ Խաչատուրեան Հաւանայի մէջ ղեկավարած է նուագախումբը ի պատիւ Միկոյեանի տրուած համերգի մը։

Ծանօթ է որ Արամ Խաչատուրեան Հաւանա մեկնեցաւ անցեալ շաբաթ, երկու օր Փարիզ անցընելէ յետոյ, ուր պիտի վերադառնայ Մարտ 27ին։

Այսօր, Քուպայի մէջ խորհրդային քաղաքականութիւնը կը ներկայացնէ՝ Անաստաս Միկոյեան, իսկ արուեստը՝ Արամ Խաչատուրեան ։

---

## ԿԱՐԵՒՈՐ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Սէն նահանգի քաղաքապետարանը կը յիշեցնէ հանրութեան որ «կասկածելի ուռերու» քննութեան համար, մասնագիտական քննարան մը հաստատուած է հանրային առողջապահութեան բուժարանի կեդրոնը.—2 Րիւ Ֆիկիէ, Փարիզ (4)։

Կասկածելի ուռերու քննութիւնը ամէնէն վստահ գիտական միջոցներէն մէկն է՝ կանխաւ հետաճշդելու համար խլիրդը (քանսէր)։

Քննարանը բաց է Երեքշաբթի եւ Շաբաթ օրերը՝ ժամը 16·30էն սկսեալ։ Քննութիւնները բոլորովին ձրի են Սէն նահանգի բնակիչներուն համար։

Քննութեան ենթարկուելու փափաքողները կրնան հեռաձայնով ժամադրուիլ (ԱՐՇԻՒ 55·53)։

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քաղէի սրահը։ Կը խօսի, մոդական լապտերով իր գործերը կը ներկայացնէ քանդակագործ Պ. ԽՈՐԷՆ ՏԷՐ-ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, Ամերիկայէն։ Կը հրաւիրուի արուեստասէր հասարակութիւնը ։



## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ողբացեալ Գառնիկ Պէօյիւքեանի մահուան առթիւ, Սուրէն Շահլամեան 30 Ն. Ֆ. կը նուիրէ, փոխան ծաղկեպսակի Աղքատախնամին։ (Ստանալ Յառաջէն)։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ ԵՒ ՆՈՒԷՐ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Պ. Սահակ Գաբրիէլեանի եւ իր զաւակներուն, Ջաւէնի, Տէր եւ Տիկ. Գառնիկ Տերոյեանի եւ իր բոլոր պարագաներուն ողբացեալ Տիկին Աննա Գաբրիէլեանի մահուան առթիւ ։

×

Պ. Սահակ Գաբրիէլեան իր կնոջ մահուան առթիւ, Կ. Խաչի միջոցով քսան Ն. Ֆ. կը նուիրէ «Յառաջ»ին եւ քսան Ն. Ֆ. Շաւարշ Միսաքեան սրահին ։ (Ստանալ «Յառաջ»էն)։

Տէր եւ Տիկին Յարութիւն Տէրոյեան կը նուիրեն քսան Ն. Ֆ. «Յառաջ»ին, քսան Ն. Ֆ. Կապոյտ Խաչին, Տէր եւ Տիկին Պարսան Յակոբեան տասը Ն. Ֆ. «Յառաջ»ին, տասը Ն. Ֆ. Կապ. Խաչին ։

Մասնաճիւղս շնորհակալութեամբ ըստացած է փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուիրատուութիւնները, Տէր եւ Տիկ. Անդրանիկ Տէր Գէորգեանէ քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կարապետ Թուլթէլեանէ 20 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Սմբատ Խանոյեանէ քսան Ն. Ֆ. ։ Տէր եւ Տիկին Արամ Խանոյեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Թորոս Շամշոյեան 15 Ն. Ֆ., Տիկին Մարիամ Ռէիզեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկ. Գարեգին Քէնտիրեան տասը Ն. Ֆ. , Պ. Գրիգոր Թուլթէլեան տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Գրիգոր Կարապետեան տասը Ն. Ֆրանք ։

×

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Կարապետ Փօլատեանի իրենց սիրեցեալ հօր մահուան առթիւ ։

## Կ'ՈՒԶՈՒԻ

25 հոգինոց հաստատութեան մը մէջ աշխատելու համար (ներքին գործեր, տան մաքրութիւն եւ լուացք), կ'ուզուի միջին տարիքի աշխոյժ կին մը։ Բնակարան, սնունդ եւ վարձատրութիւն ։

Անձամբ դիմել «Յառաջ»ին ։



Imprimerie Spéciale du Journal « Haratch »



*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250)։ Դիմել Յառաջի հասցէով ։

Գումարները ղրկել մանտա-քարտով միայն ։

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն առիպողաբար խմբական ժողովի կը հրաւիրէ Փարիզի «Րաֆֆի» խումբի ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, Բէժանի վերնայարկը .— մեթրօ Քատէ ։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն ։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն խմբական ժողովի կը հրաւիրէ «Քրիստափոր» խումբի ընկերները այս Երկուշաբթի, ժամը 21ին Մշակոյթի Տան փոքր սրահին մէջ։ Պարտաւորիչ ներկայութիւն ։

Տեղական մամուլին ենթադրութիւններու կարգին «Ֆիկառօ»ն հաւանական կը նկատէ որ պատժական օրինագծի, 63, 64 եւ 65 յօդուածները վերամշակուին: Ըստ այդ օրինագծի յօդուածներուն ոստիկանութիւնը իրաւունք չունի, հարցաքննութեան պատրուակին տակ, ոեւէ անձ 24 ժամէն աւելի պահ դնելու իր մօտ: Ցարդ անհրաժեշտ էր ստանալ դատական մարմիններու հաւանութիւնը: Առ այժմ կարելի չէ ըսել թէ վերափոխումը ինչ չափով պիտի ըլլայ:

Ալժէէն հասած հաւաստի լուրերուն համաձայն դատական մարմինները երկու քննութիւններ բացած են: Առաջինը՝ (դաւադրութիւն) Օրթիզի եւ ուրիշներու դէմ եւ երկրորդը՝ (ներքին ապահովութիւնը վտանգող) 24ի հրացանաձգութեան պատասխանատուներուն դէմ:

Գնդ. Կոտար որ ատենէ մը ի վեր «պաշտօնանկ» եղած էր, փոխարինուած է՝ Ժ. Օպէրին կողմէ:

«Էքօ տ'Ալժէ»ի տնօրէնը, Ա. տը Սէրինեի որ «հսկողութեան տակ» առնուած էր, Պարպըրուսի բանտը փոխադրուած է: Կ'ամբաստանուի «պետութեան դէմ դաւած» ըլլալու յանցանքով:

---

## ՑՈՒՐՏԸ ԿԸ ՍԱՍՏԿԱՆԱՅ ՊՈԼՍՈՅ ՄԷՋ

Պոլսոյ վերջին թղթաբերէն (Փետր. 6 – 7) կը տեղեկանանք թէ սաստիկ ցուրտ կը տիրէ քաղաքին մէջ: 19 տարիէ ի վեր, առաջին անգամ ըլլալով ջերմաչափը իջած է զերոյէն վար 10ի: 28 խանութներ որոնք չէին մաքրած իրենց մայթերուն ձիւնը տուգանքի դատապարտուեցան: Անատոլուի մէջ, վեց օր է կը ձիւնէ եւ Սաքարիայի մէջ, ձիւնը բարձրացած է մէկ մեթրի: Գոնիայի մէջ ջերմաչափը հետզհետէ կ'իյնայ: Հինդ հոգի մեռած են սառելով:

Էրզրումի ճեպընթացը չէ կրցած Սարըգամըշէն անդին անցնիլ:

Պոլսոյ քաղաքապետութիւնը ձիւնոտ օրերու շարունակուիլը տեսնելով, առատ քանակութեամբ աղիւր բաշխած է փուռերուն: Կարգ մը փուռեր ստիպուած եղած են օթեկ հաց ծախելու:

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Այս Ուրբաթ իրիկուն ժամը 21ին Սալ Փլէյէլի մէջ (252 Ֆօպուռ Սէնթ Օնոռէ) Նարպօնած տը Ֆրանսի հովանաւորութեան տակ առաջին ունկնդրութեամբ պիտի տրուի Ժօժէն Պօզայի «Հանքին Երգը»: Կը մասնակցի Օր. Լիտիա Կարին, (ալթօ):

Մուտքը՝ հրաւիրատոմսով, ստանալ 18 Րիւ Ֆրանսուա Ա.: Դոմսերը կը թուագրուին ժամը 20էն սկսեալ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Պանեէօ Քաշանի մասնաճիւղը Հ. Հանճեանի մահուան տխուր առիթով փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գէորգ Նիկողոսեանէ 15 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Օննիկ Թուֆանեանէ 10 Ն. Ֆ.:

×

Շաւիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացած է քսան Ն. Ֆ. փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Օր. Եղսաբրդուհի Փաստրմաճեանի մահուան առթիւ:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ստիպողաբար խմբական ժողովի կը հրաւիրէ Փարիզի «Րաֆֆի» խումբի ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, Բէժանի վերնայարկը. — մեթրօ Քատէ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԱԼՖՈՐՎԻԼ. — Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Կարեւոր օրակարգ:

ԻՍԻ. — Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԼԻՈՆ. — Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 20.30ին, 101, Ավընիւ տը Սաքսի սրահը: Պարտաւորիչ ներկայութիւն:

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2.5 (= 250): Դիմել Յառաջի հասցէով:

Գումարները ղրկել մանտա – քարտով միայն:

---

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ**

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը: Կը խօսի, մօդական լապտերով իր գործերը կը ներկայացնէ քանդակագործ Գ. ԽՈՐԷՆ ՏԷՐ – ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, Ամերիկայէն: Կը հրաւիրուի արուեստասէր հասարակութիւնը:

## Ի ՆՊԱՍՏ ԻՍԻԻ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ

Այս Կիրակի ժամը 15ին, Իսիի Սալ տէ Ֆէթի մէջ տեղի կ'ունենայ շարժանկարի եւ ժողովրդական երգերու ցերեկոյթ մը:

Բարձր հովանաւորութեամբ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Եւ Փարիզի Կրօն. Ընկերակցութեան:

Շարժանկար. — Ուրուականները լեռներից կը հեռանան:

Գեղարուեստական բաժին սիրուած արուեստագէտներու մասնակցութեամբ:

Մուտք 3 Ն. Ֆ.:

## Կ'ՈՒԶՈՒԻ

25 հոգինոց հաստատութեան մը մէջ աշխատելու համար (ներքին գործեր, տան մաքրութիւն եւ լուացք), կ'ուզուի միջին տարիքի աշխոյժ կին մը: Բնակարան, սնունդ եւ վարձատրութիւն:

Անձամբ դիմել «Յառաջ»ին:

գիւղին վրայ Իսրայէլի պատժական ար-շաւանքը նոր քաղաքականութեան ցայ-տուն օրինակը չէ, արդեօ՞ք: Արտաքին քաղաքականութեան մարզէն ներս, Պէն Կուրիոն մտադրած է քարոզչական եւ լուսաբանական «արշաւ» մը ձեռնարկել, բացատրելու համար թէ ինչո՞ւ կը գին-ուին:

## ՆԱՍՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Խօսելով քննատական ձայնասփիւռի թղթակիցին՝ Գնդ. Նասր յայտարարած է թէ հաւանական կը գտնէ որ Իսրայէլ մօտ ատենէն նախայարձակ ըլլայ, ու այս առ-թիւ աւելցուցած է թէ իրենք պատրաստ են դէմ դնելու: Իր յայտարարութեանը ընթացքին՝ գնդապետը ի մէջ այլոց ըսած է.— «Իսրայէլ իր ծրագիրները իրա-գործել պիտի փորձէ, ի հաշիւ արաբ աշխարհին: Վերջին հաշուով Իսրայէլ նոր պատերազմի մը պիտի ձեռնարկէ գը-լուխ հանելու իր հին երազը՝ կազմու-թիւնը Նեղոսէն մինչեւ Եփրատ տարած-ուող պետութեան մը: Անդրադառնալով Պաղեստինի արաբ գաղթականներուն՝ նա-խագահը անգամ մը եւս պահանջած է որ Իսրայէլ ենթարկուի ՄԱԿի որոշումնե-րուն:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն եւ իր ենթակոմիտէները ու խումբերը, ինչ-պէս նաեւ Կապոյտ Խաչի եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութիւնները ցաւակցութիւններ կը յայտնեն Պ. Կ. Փօ-լատեանին եւ իր ընտանեկան բոլոր պա-րագաներուն, իրենց հօր եւ ազգականին՝ Յ. Փօլատեանի կսկծալի մահուան առ-թիւ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ (Բ. Ցանկ)

Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւ-եալ նուէրները.—

Տէր եւ Տիկին Լեւոն Սարաֆեան 10 Ն. Ֆ., Պ. Արզումանեան Ս. քսան Ն. Ֆ., Տիկին Օհանեան տասը Ն. Ֆ., Պ. Ան-տոնեան, Ողբ. Տիկին Լուիզ Անտոնեանի մահուան առթիւ 40 Ն. Ֆ., Պ. Պէշիրեան տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Ստեփան Տամլամեան, փոխան ծաղկեպսակի ողբ. Վարուժան Մէլիքեանի մահուան առթիւ քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Զ. Մութաֆ-եան ողբ. Վ. Մելիքեանի մահուան առ-թիւ քսան Ն. Ֆ., Պ. Արամ Տարօնեան, ողբ. Կիւլիւկ Փափազեանի մահուան առ-թիւ տասը Ն. Ֆ., Պ. Տարումեան Սա-հակ տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Խաչ-մանեան յիսուն Ն. Ֆ., Պ. Զաւէն Կիւլ-եան տասը Ն. Ֆ., Տիկին Իսքէնտէր 30 Ն. Ֆ., Տիկին Եէրիմեան տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կղմէս Տարաքճեան յիսուն Ն. Ֆ., Տիկին Յովհաննէսեան, Անտիլլի ծերանոցին երեսուն Ն. Ֆ., Ողբ. Օննիկ Պէզազեանի (Գլէօզ տէ Տիամանթէր)ի բարեկամներուն կողմէ 66 Ն. Ֆ., Պ. Պ. Քավէճեան եղբայրներ քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Այանեան (Սէնթ Էթիէն) երկու ծերանոցներուն հարիւր Ն. Ֆ., Պ. Յ. Պաղտասարեան տասը Ն. Ֆ., Պ. Աշոտ Պէտիքեան հինգ Ն. Ֆ., Այրի Տիկին Ղա-զարեան, իր քեռայրին՝ ողբ. Ղազարեա-նի յիշատակին քառասուն Ն. Ֆ., Տոքթ. Խայիկեան (Մարսէյլէն) տասը Ն. Ֆ.: (Շար.)





## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Վիէնի վարչութիւնը շը-նորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները իր դպրոցներուն համար:

Պ. Յ. Հայթայեան ընտանիքէն՝ տասը Ն. Ֆ., Պ. Յ. Գալայճեան ընտանիքէն տասը Ն. Ֆ., Պ. Գ. Խաչատուրեան ըն-տանիքին ապաքինման առթիւ տասը Ն. Ֆ.:







Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250): Դիմել Յառաջի հասցէով:

Գումարները ղրկել մանտա – քարտով միայն:







## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ստիպողաբար խմբական ժողովի կը հը-րաւիրէ Փարիզի «Րաֆֆի» խումբի ըն-կերները այս Ուրբաթ, ժամը 21ին, Բէ-ժանի վերնայարկը.— Մեթրօ Քատէ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկա-յութիւն:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինաս-եան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հը-րաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայա-ցուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Կարեւոր օրակարգ:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմի-տէն ընկերական ընդհ. ժողովի կը հրա-ւիրէ իր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կո-միտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկեր-ները այս Ուրբաթ ժամը 20·30ին, 101, Ավընիւ տը Սաքսի սրահը: Պարտաւորիչ ներկայութիւն:



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազ-դերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

կշիռը ոստիկանութեան վրայ ։

Կարգն ու կանոնը վերահաստատելու համար, Գ. Հանգրուանն է, եզրակացուց նախարարը ։

× Ալէ տը Սերինիի ձերբակալութիւնը կը շարունակէ զանազան մեկնութեանց առիթ տալ։ Ամերիկացիները կը բողոքեն նկատելով որ մամուլի ազատութեան նոր բռնաբարում մըն է ։

× Քանար Անշէնէի անցեալ շաբթուան թիւը գրաւուած է Ալժէի մէջ ։

Էճսփրէս շաբաթաթերթը մասնաւոր հրատարակութիւն մը սկսած է միայն Ալժերիոյ համար ։

---

ԱՆԱՍՏԱՍ ՄԻԿՈՅԵԱՆ տեսակցութիւն մը ունեցած է գրագէտ Հէրնըսթ Հիմինկուէյի հետ, Հաւանայի մէջ, անոր նուիրելով իր գործերուն մէկ հատորը հրատարակուած Խորհրդ. Միութեան մէջ ։

ՖՐԱՆՍԱԿԱՆ երկաթուղին 557 միլիոն ճամբորդներ եւ 768 միլիոն թոն ապրանք փոխադրած է, անցեալ տարուան ընթացքին ։

ԱՆՏՐԷ ՄԱԼՐՕ մշակութային նախարարը Քոմէտի Ֆրանսէզի «ընթերցման կոմիտէ»ի անդամ նշանակեց փրոֆ. Անրի Մոնտոր ։

## ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի 14 Փետրուար ժամը 17էն 24, տեղի կ'ունենայ մեծ պատրաստութեամբ, Սիթէ Իւնիվէրսիթէրի Հայ Ուս. Տան պարահանդէսը՝ Վարդիվանեան նուագախումբի առաջնորդութեամբ ։

Հասոյթը պիտի յատկացուի Հայկ. Ուսանողական Տան գրադարանի, ինչպէս նաեւ սալերու ճոխացման ։

## ՓՈԽԱՆ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏԻ

Ստեփան Պալեանի մահուան քառասունքին առթիւ, իր հինգ թոռնիկները՝ Քրիսթինէ եւ Ստեփան Պառաքեան, Մարիլին, Նուպար եւ Ֆիլիփ Պալեան իրենց սիրեցեալ մեծ հայրիկին յիշատակին կը նուիրեն՝ քսան Ն.Ֆ. Մոնմորանսիի Հանգստեան տան եւ տասը Ն. Ֆ. Յառաջին ։ (Ստանալ «Յառաջ»էն) ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Խաչատուր Արզումանեան, Լուսիկ եւ Վարսենիկ Արզումանեան, Տէր եւ Տիկին Պաղտասար Արզումանեան հոգեհանգիստ կատարել կուտան իրենց եղբօր եւ եղբօրորդւոյն՝

ԱՍԱՏՈՒՐ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, այս Կիրակի առաւօտ ։

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները ։



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ստիպողաբար խմբական ժողովի կը հրաւիրէ Փարիզի «Րաֆֆի» խումբի ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, Րէժանի վերնայարկը.— մեթրօ Քատէ ։ Կարեւոր օրակարգ ։ Պարտաւորիչ ներկայութիւն ։

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին ։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը ։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ ։ Կարեւոր օրակարգ ։

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին ։ Բացակաները նկատի պիտի առնուին ։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 20.30ին, 101, Ավընիւ տը Սաքսի սրահը ։ Պարտաւորիչ ներկայութիւն ։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. «Քրիստափոր» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ երեկոյ, ժամը 8.30-ին, Ահարոնեան ակումբը ։ Պարտաւորիչ ներկայութիւն ։ Կարեւոր օրակարգ ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Պ. Նշան Քոռթօշեանէ հինգ Ն. Ֆ., Տիկին Մաքսեանի մահուան առթիւ ։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի Տեառնընդառաջի տօնը պիտի կատարուի բազմաձայն հանդիսաւոր արարողութեամբ եւ օրուան յատուկ հոգեզմայլ շարականներու երգեցողութեամբ, եղանակաւէտ ձայներով ։

× Երեւանէն Յակոբ Պօղոսի Ներսէսեան կը փնտռէ իր որդին՝ Աւետիք Յակոբի Ներսէսեանը, որ նամակ ունի հօրմէն ։ Ստանալ եկեղեցիէն ։



*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2.5 (= 250) ։ Դիմել Յառաջի հասցէով ։

Գումարները ղրկել մանտա - քարտով միայն ։

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ

### ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20.30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ ։

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզատէի՝

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐԸ »

Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ ։

## ի ՆՊԱՍՏ ԻՍԻԻ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ

Այս Կիրակի ժամը 15ին, Իսիի Սալ տէ Ֆէթի մէջ տեղի կ'ունենայ շարժանկարի եւ ժողովրդական երգերու ցերեկոյթ մը ։ Բարձր հովանաւորութեամբ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

եւ Փարիզի Կրօն. Ընկերակցութեան ։

Շարժանկար.— Ուրուականները լեռներից կը հեռանան ։

Գեղարուեստական բաժին սիրուած արուեստագէտներու մասնակցութեամբ ։

Մուտք 3 Ն. Ֆ. ։

## Կ'ՈՒԶՈՒԻ

25 հոգինոց հաստատութեան մը մէջ աշխատելու համար (ներքին գործեր, տան մաքրութիւն եւ լուացք), կ'ուզուի միջին տարիքի աշխոյժ կին մը ։ Բնակարան, սնունդ եւ վարձատրութիւն ։

Անձամբ դիմել «Յառաջ»ին ։

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան ։

**ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ** *բնակչութեան ընդհ. թիւն է՝* 179·300·000 *: Պաշտօնական մարմինները կը յայտարարեն թէ անցեալ տարուան վրայ շուրջ երեք միլիոնի յաւելում մը կայ: Վերջին յիսուն տարիներուն, բնակչութեան թիւը կրկնապատկուած է: Իգական սեռը կը գերազանցէ արականը՝* 1·800·000*ով :*

**ՓԱՍԹԵՐՆԱՔ**, *նոպէլեան մրցանակին արժանացած ռուս մեծ գրագէտը տօնած է իր ծննդեան 70ամեակը : Այս մասին ոչ մէկ խօսք Մոսկուայի ձայնասփիւռէն եւ ոչ մէկ արձագանգ Խ. Միութեան մամուլին մէջ :*

**ՊԻՎԸՆԻ** *առողջական վիճակը բարելաւուած է, կը հաղորդեն Լոնտոնի թերթերը: Մինչեւ վերջերս ծանր կը նկատուէր :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Լիոնի Ազգ. Միութիւնս շնորհակալութեամբ ստացած է Վիէնի Բարեկամական Միութեան ներկայացուցիչ Պ. Բալթօպետրոսեանէ 50 Ն. Ֆ., ի նպաստ եկեղեցւոյ շինութեան :*

×

*Այրի Տիկին Փայլիկ Ժամկոչեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Նազար Ժամկոչեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Փօլ Անտոնեան եւ զաւակը, բոլոր ազգականները խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք ծաղկեպսակով, անձամբ, հեռագրով եւ նուիրատուութեամբ իրենց մասնակցութիւնը բերին իրենց ողբացեալ ամուսնոյն, եղբօր, աներհօր եւ կնքահօր զառնակսկիծ անակընկալ մահուան առթիւ: (51 տարեկանին):*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Սեւամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան :*

*Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Աֆրիկեանի): Ապրիլ 17ին*

×

*Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան տարեկան պարահանդէսը Մարտ 13ին, Կիրակի ժամը 16էն մինչեւ 24, Ամպասատէօրի շքեղ սրահին մէջ :*

## ԳՐԱՏՈՒՆ ՊԱՐՍԱՄԵԱՆ

46, Rue Richer - Paris (9e)
C. C. P. Paris 3630 - 66
Tél. : PRO vence 64 - 90

Նոր Հրատարակութիւններ

*ԱՄԷՆՈՒՆ ՏԱՐԵԳԻՐՔԸ, Կարօ Գէորգեանի, 1960, է. տարի, կազմուած, պատկերազարդ 16·50 Ն. Ֆ., Թղթատարի ծախք 2 Ն. Ֆ.:*

| | |
|---|---|
| Le Vert Soleil de la Vie Victor Gardon (Roman) | 6,60 |
| L'Arménie. J. P, Alem | 2,00 |

*ՊՐԻՍՄԱԿ, Գ. Համբարձումեան 5 Ն. Ֆ.:*

*ՀԱՅ ԳՈՂԳՈԹԱՆ, Գրիգորիս Եպ. Պալաքեան, Բ. հատոր, Փարիզ, 1960, 15 Ն. Ֆ. :*

Թղթատարի ծախքը գնողին կը պատկանի :

## ՓԵՏՐՈՒԱՐ 18
## ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Փետրուարեան ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Կիրակի, Փետրուար 21ին, ժամը 15ին Օհանջանեան ակումբին մէջ:*

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ.* Անի *կոմիտէի :*

*Կը նախագահէ Ընկ. Հ. ՉԱՔԱՐԵԱՆ*

*Գեղարուեստական բաժին : Խմբերգներ Նոր Սերունդի կողմէ: Մեներգ՝* Օր. Վ. Մուրատեան, Տիկին Ռըստիկեան, Տիկին Սիրարփի Փերսիքեան (*Վալանսէն*), *կենդանի պատկեր՝* Հայր եւ որդի դէմ դիմաց : *Շարժանկար՝* Սինէ Ղազօ :

*Արտասանութիւններ՝ փոքրիկներ* Տէլամնեան, Բարսեղեան *եւ* ընկ. Յ. Մաթոսեան :

*Պիւֆէ : Մուտքը ազատ է :*

Հայկական մթնոլորտ :

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Փետրուար* 18ի *համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Մարտ 5ին, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս : (Ալհամպրայի սրահներու մէջ), հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէի եւ Մարսէյլի «Շաւարշ Միսաքեան» երիտասարդ խումբին: Հանդէս եւ պարահանդէսով :*

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ
### Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250): Դիմել Յառաջի հասցէով :

*Գումարները ղրկել* մանտա – քարտով *միայն :*

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ԼԻՈՆԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Սեւամանթօ խումբի կողմէ :*

*20 Փետրուար, Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ Պէրիէ – Միյէի շքեղ սրահներուն մէջ :*

*Գեղարուեստական բաժին, ընտիր նըւագախումբ:*

*Ճոխ պիւֆէ եւ այլազան տեսակի խաղեր :*

×

*Նկատի ունենալ Հայկական երգի փառատօնը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 17ին, Կիրակի կէսօրէ ետք Փարիզի ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի կողմէ, ղեկավարութեամբ Կարպիս ԱՓՐԻԿԵԱՆի, Սալ Ռամոյի մէջ:*

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
## Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ
## ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

*Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20·30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ:*

*Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզատէի՝*

*« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »*

*Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ :*

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան:

## ԱՊՐԻԼ 11-24 Ը
## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Կ'ոգեկոչուի Ապրիլ 24ին :*

Նախաձեռնութեամբ ՋՈՄի, *Սալ Քատէի մէջ:*

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
## ՎԱՐԺԱՐԱՆ

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ
## ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ՝ ՓԵՏՐՈՒԱՐ 21

HOTEL GEORGE Vի ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

*Պատուոյ նախագահութեամբ՝* *ՏԻԿԻՆ ՎԱՀՐԱՄ ՊԷՅ ՆՈՒՊԱՐի*

ժամը 17էն մինչեւ կէս գիշեր — ՊԱՐԻ ԵՐԿՈՒ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Cotillons - Tombola - Attractions**

*Խնամուած պիւֆէ սովորական գիներով*

Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները Tel. TRO. 03-18 C.C.P. Paris 8019-[illegible]

Մուտք՝ 5 Ն. Ֆ., ուսանողներու համար 3 Ն. Ֆ. :

### ԱՆԳԼԻԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԸ ՎՍՏԱՀՈՒԹԵԱՆ ՔՈՒԷ ՏՈՒԱՒ

Արեւմտեան Գերմանիան զինելու քաղաքականութիւնը պիտի շարունակուի :

233ի դէմ 322 ձայնով անգլիական խորհրդարանը վաւերացուց կառավարութեան Գերմանիոյ հանդէպ ընտրած քաղաքականութիւնը : Պաշտպանութեան նախարարը, Ուաթքինսըն պատասխանելով ընդդիմադիրներուն ըսած է թէ արդէն իսկ, Արեւմտեան Գերմանիան իր տրամադրութեան տակ ունի երեսուն քլմ·ի վրայ արձակուող հեռավար հրթիռ մը :

« Այժմ —աւելցուցած է նախարարը— չենք կրնար արգիլել Գերմանիոյ զինումը : Նման քայլ մը պիտի վտանգէ Ատլանտեան Ուխտի զինուորական ուժը » :

———o———

ՓԵՔԻՆԻ մէջ մեծ շուքով տօնուած է Չինեւխորհրդային զինակցութեան 10րդ տարեդարձը : Այս առթիւ Մաօ Ցէ Թունկ յայտարարած է «ոչ մէկ ուժ կրնայ քանդել մեր երկու երկիրներուն բարեկամութիւնը » :

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը : Հաւաքոյթը նուիրուած է Վ·Զէյթունցեանի յիշատակին : Խօսք պիտի առնեն բամաթիւ մտաւորականներ :

Ջայնական ժապաւէնով պիտի տրուի հանգուցեալին մէկ ճառը :







Imprimerie Spéciale du Journal « Haratch »

### ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՎԻԷՆԻ ՄԷՋ

Փետրուարեան ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Կիրակի, Փետրուար 21ին, ժամը 15ին Օհանջանեան ակումբին մէջ:

Նախաձեռնութեամբ Հ· Յ· Դ· Անի կոմիտէի :

Կը նախագահէ Ընկ· Հ· ԶԱՔԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժին : Խմբերգներ Նոր Սերունդի կողմէ : Մեներգ՝ Օր· Վ· Մուրատեան, Տիկին Ռըստիկեան, Տիկին Սիրարփի Փերսիքեան (Վալանսէն), կենդանի պատկեր՝ Հայր եւ որդի դէմ դիմաց : Շարժանկար՝ Սինէ Ղազօ :

Արտասանութիւններ՝ փոքրիկներ Տէլամեան, Բարսեղեան եւ ընկ· Յ· Մաթոսեան :

Պիւֆէ : Մուտքը ազատ է :
Հայկական մթնոլորտ :

### ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Մարտ 5ին, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս : (Ալհամպրայի սրահներու մէջ), հովանաւորութեամբ Հ· Յ· Դ· Մարսէյլի Շրջ· Կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ· Յ· Դ· Մարսէյլի « Քրիստափոր» ենթակոմիտէի եւ Մարսէյլի « Շաւարշ Միսաքեան» երիտասարդ խումբին: Հանդէս եւ պարահանդէսով :

### ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ· Յ· Դ· Նոր Սերունդի Սիամանթօ խումբի կողմէ :

20 Փետրուար, Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ Պէրիէ – Միյէի շքեղ սրահներուն մէջ :

Գեղարուեստական բաժին, ընտիր նուագախումբ :

Ծոխ պիւֆէ եւ այլազան տեսակի խաղեր :

×

Նկատի ունենալ Հայկական երգի Փառատօնը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 17ին, Կիրակի կէսօրէ ետք Փարիզի ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի կողմէ, ղեկավարութեամբ Կարպիս ԱՓՐԻԿԵԱՆի, Սալ Ռամոյի մէջ:



### ԱՊՐԻԼ 11-24 Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ոգեկոչուի Ապրիլ 24ին :

Նախաձեռնութեամբ ԶՈՄի, Սալ Քատէի մէջ :

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները : Խարբերդ Քօլէժի Սանուց Միութենէն յիսուն տոլար : Բարեսէր ազգային մը, Պ· Ա· Մալաճեանի միջոցաւ, երկու հարիւր Ն· Ֆ· : Պ· Պ· Վ· Աթարէկեան, Պ· Մինասեան հարիւրական Ն· Ֆ· ողբացեալ Նինա Մինասեանի մահուան տարելիցին առիթով : Տիկին Պ· Պօղոսեան տասը Ն· Ֆ· :

### ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20·30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ:

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզադէի՝

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐԸ »

Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« ՎԱՐԴԱՆԱՆՑ »Ը

Կը ներկայացուի Առնուվիլի Հ· Յ· Դ· Նոր Սերունդին կողմէ :

Ապրիլ 3ին

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

### ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2·5 (= 250) : Դիմել Յառաջի հասցէով :

Գումարները ղրկել մանտա – քարտով միայն :





### ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Այրի Տիկին Մառի Գասապեան (Անիէռ) կը նուիրէ յիսուն Ն· Ֆ· Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օղափոխութեան կայանին իր ողբացեալ ամուսնոյն՝ մահուան քառասունքին առթիւ:

Նոր տարուան առթիւ Հայ Կարմիր Խաչի բարենպատակ ձեռնարկներուն ի նպաստ կը նուիրեն· Պ· Գուստիքեան քսան Ն· Ֆ·, Պ· Հաճեան տասը Ն· Ֆ·:

Հայ Կարմիր Խաչի տարեկան ցերեկոյթ պարահանդէսին առթիւ Ֆէսանվիլիէի օդափոխութեան կայանին կը նուիրեն :

Տոքթ· Զ· Զաքմիչեան տասը Ն· Ֆ·, Տոքթ· Գրիգորիս Արթինեան տասը Ն· Ֆ·, Պ· Ն· Փափազեան տասը Ն· Ֆ·, Տէր եւ Տիկին Շաթէն տասը Ն· Ֆ·, Պ· Յ· Առաքելեան տասը Ն· Ֆ·, Պ· Կարմիրեան հինգ Ն· Ֆ·:

### 29ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կազմակերպուած շրջանին երէցներուն, սկաուտներուն եւ գայլիկներուն կողմէ:

Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2·30ին,

**SALLE DE LA CHIMIE, 28 bis Rue St. Dominique**
**Paris 7e, Métro Invalides**

Ներկայացումներ սկաուտներուն կողմէ, երգեր եւ պարեր, հայկական պարեր, կենդանի պատկերներ եւ խաղեր փայլիկներէն : Ֆրանսերէն կը ներկայացուի՝

« ԹՈՒԶՈՂ ՀՈՎԱՆՈՑԸ »

կատակերգութիւն, խմբապետուհիներուն կողմէ :

Մասնաւոր պատրաստութեամբ եւ բեմադրութեամբ, Նախկին Հայ Արիները կը ներկայացնեն, հայերէն, Շէյքսփիրի հանրածանօթ կատակերգութիւնը :

ԸՆՏԱՆԵՑԱԾ ՋԱՏՈՒԿԸ
**(La Mégère Apprivoisée)**

Սիրայօժար մասնակցութեամբ եւ օժանդակութեամբ

Շաւիլի Երիտասարդաց թատերախումբին :

Պիւֆէ, ցուցադրութիւն — Մուտք 3 Ն· Ֆ· (300) եւ 5 Ն· Ֆ· (500)

Այրի Տիկին Ծնունդ Պաղտասարեան, Այրի Տիկին Պերճուհի Պաղտասարեան, Օրիորդներ Մառի եւ Անահիտ Պաղտասարեան, Այրի Տիկին Ովսաննա Փափազեան, Տէր եւ Տիկին Տոմինիք Տորիա, Տէր եւ Տիկին Յարութ Փափազեան, Պ. Արմենակ Փափազեան, Այրի Տիկին Նազիկ Խիւտավէրտեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կ. Պօուչեան եւ զաւակը, Այրի տիկին Ֆ. Սալլապաշեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ա. Տոլմաճեան, Տէր եւ Տիկին Գէորգ Յովհաննէսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գ. Յովհաննէսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Նուպար Յովհաննէսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հրանդ Մինասեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Նշան Մինասեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ջէրչեան, Օր. Էկլանթին Ժամկոչեան ցաւով կը ծանուցանեն իրենց թոռան, զաւկին, եղբօր, եղբօր զաւկին, զարմիկին եւ ազգականին՝

ՄԻՇԷԼ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆԻ

դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 24ին, Ալժերիոյ ճակատը, 24 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Հինգշաբթի ժամը 13.45ին, Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին:

Հաւաքուիլ ժամը 13.30ին, բնակարանը՝ 13 Րիւ Պալէօֆ, Ալֆորվիլ:

Մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

ԾԱՆՕԹ. — Շառանթօն էֆօլէն 103 թիւ հանրակառքը, իջնել՝ Քամելիա – Էմիլ Զօլա:

## Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս պատշաճօրէն պիտի տօնուի Վարդանանց ազգային պատմական տօնը, յառաջիկայ Փետրուար 25ին, ժամը 10ին: Յետ պատարագի աշակերտութիւնը պիտի երգէ եւ արտասանէ օրուան պատշաճ կտորներ: Արարողութիւններուն պիտի նախագահէ Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ: Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջակայքի բոլոր վարժարաններու աշակերտութիւնը, ուսուցչական կազմը եւ հայ հասարակութիւնը:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կրընոպլի Մանուկներու Օրուան առթիւ եկած են հետեւեալ նուէրները. —

Մարտիկներու Միութիւն 40 Ն. Ֆ., Պ. Սթամպուլեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Աւագեան 18 Ն. Ֆ., Տիկին Մինասեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Ալիքեան 15 Ն. Ֆ., Օր. Սիսլեան 15Ն. Ֆ., Պ. Էսկինեան 11 Ն. Ֆ., Օր. Տէր Ղուկասեան, Տէր եւ Տիկին Թիւթիւնճեան, Տէր եւ Տիկին Քիւրքճեան, Փոքրիկն Քիւրքճեան, Տէր եւ Տիկին Գոստիկեան, Տէր եւ Տիկին Ճերմակեան, Տէր եւ Տիկ. Տիպիտապեան, Տէր եւ Տիկին Զատիկեան, Տէր եւ Տիկին Միսքճեան, Տէր եւ Տիկին Մարանճեան, Տէր եւ Տիկին Անտոնեան, Տէր եւ Տիկին Այվազեան, Տէր եւ Տիկին Լիոտիս տասնական Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կարմիրեան եօթը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Գոնտուլաճեան վեց Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Արապեան, Տէր եւ Տիկին Խաչատուրեան (Ռընաժ), Տէր եւ Տիկին Միքայէլեան, Տէր եւ Տիկին Աւաեան, Տէր եւ Տիկին Երանոսեան, Տէր եւ Տիկ. Ուղուրեան, Տիկին Գույումճեան, Ժօժօ հինգական Ն. Ֆ.:

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը
## ՎԻԷՆԻ ՄԷՋ

Փետրուարեան ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Կիրակի, Փետրուար 21ին, ժամը 15ին Օհանջանեան ակումբին մէջ:

Նախագահութեամբ Հ. Յ. Դ. Անի կոմիտէի:

Կը նախագահէ Ընկ. Հ. ՋԱՔԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժին: Խմբերգներ Նոր Սերունդի կողմէ: Մեներգ՝ Օր. Վ. Մուրատեան, Տիկին Ռըստիկեան, Տիկին Սիրարփի Փերսիքեան (Վալանսէն), կենդանի պատկեր՝ Հայր եւ որդի դէմ դիմաց: Շարժանկար՝ Սինէ Ղազօ:

Արտասանութիւններ՝ փոքրիկներ Տէլամեան, Բարսեղեան եւ ընկ. Յ. Մաթուսեան:

Պիւֆէ: Մուտքը ազատ է:

Հայկական մթնոլորտ:

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Մարտ 5ին, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս: (Ալհամպրայի սրահներու մէջ), հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէի եւ Մարսէյլի «Շաւարշ Միսաքեան» երիտասարդ խումբին: Հանդէս եւ պարահանդէսով:

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Միամանթօ խումբի կողմէ:

20 Փետրուար, Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ Պէրիէ – Միյէի շքեղ սրահներուն մէջ:

Գեղարուեստական բաժին, ընտիր նուագախումբ:

Ճոխ պիւֆէ եւ այլազան տեսակի խաղեր:

×

Նկատի ունենալ Հայկական երգի փառատօնը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 17ին, Կիրակի կէսօրէ ետք Փարիզի ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի կողմէ, ղեկավարութեամբ Կարպիս ԱՓՐԻԿԵԱՆԻ, Սալ Ռամոյի մէջ:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻՆ

Տէր եւ Տիկին Պօղոս Խայինեան իրենց մեծ մօր՝ Սուլթան Գարագէլլէեանի մահուան քառասունքին առթիւ 40 Ն. Ֆ. կը նուիրեն Կապոյտ Խաչի օժանդակութեան կայանին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Ուրբաթ գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը: Հաւաքոյթը նուիրուած է Վ. Զէյթունցեանի յիշատակին: Խօսք պիտի առնեն բազմաթիւ մտաւորականներ:

Զայնական ժապաւէնով պիտի տրուի հանգուցեալին մէկ ճառը:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ԱՊՐԻԼ 11-24Ը
## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ողեկոչուի Ապրիլ 24ին:

Նախաձեռնութեամբ ՔՈՄԻ, Սալ Քատէի մէջ:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. Ուս. Միութեան, Նոր Սերունդի Կ. Վարչութեան եւ «Փոթորիկ» խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ՇԱԻԼ. — Հ. Յ. Դ. Շաւիլի «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ԿՐԸՆՈՊԼԸ. — Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեանի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է: Անդամատետրերը միասին բերել:

### ՍՏԻՊՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ապրիլեան Սերունդի (Նախկին Զ. Ո. Մ.) Փարիզի Կեդր. Վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամ – անդամուհիները այս Երկուշաբթի գիշեր ժամը 21ին, Ռէժանի սրճարանի վերնայարկը: Կարեւոր օրակարգ: Բացակաները վերջնականապէս հրաժարեալ պիտի նկատուին:



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 2 փրանք (հին փրանքով՝ 200), փոստով ղրկուելու պարագային 2.5 (= 250): Դիմել Յառաջի հասցէով:

Գումարները ղրկել մանտա – քարտով միայն:

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10) ժամը 20.30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժ. սրահին մէջ:

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզադէի՝

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐԸ »

Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ:

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Կ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջանի ընկերները :

ԼԻՈՆ.— 26 Փետրուար Ուրբաթ գիշեր :
ՏԷՍԻՆ.— 27 Փետր. Շաբաթ գիշեր :
ՎԻԷՆ.— 28 Փետր. Կիրակի կէսօրէ վերջ :
ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— 29 Փետրուար, Երկուշաբթի գիշեր :
ՍԷՆ ՇԱՄՈՆ.— 1 Մարտ, Երեքշաբթի գիշեր :
ՎԱԼԱՆՍ.— 2 Մարտ, Չորեքշաբթի գիշեր :
ԿՐԸՆՈՊԼԸ.— 3 Մարտ, Հինգշաբթի գիշեր :
ՄԱՐՍԷՅԼ.— 6 Մարտ, Կիրակի կէսօրէ վերջ :

Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. Միութեան, Նոր Սերունդի Կ. Վարչութեան եւ «Փոթորիկ» խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 21-ին, սովորական հաւաքատեղին :

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. Շաւիլի «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեանի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է: Անդամատետրերը միասին բերել :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի եւ «Շաւարշ Միսաքեան» խումբի ընդհ. ընկերական ժողովը այս կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Ներկայ պիտի ըլլայ Մարսէյլի Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն խորհրդակցական ժողովի կը հրաւիրէ Հ. Յ. Դ. Փարիզի «Ռոստոմ» եւ «Քրիստափոր» խումբերու վարչութիւնները, այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, Մշակոյթի տան փոքր սրահին մէջ:

ՊՈՄՈՆ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի եւ «Յառաջ» խումբի միացեալ ընկերական ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն :



## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՎԻԷՆԻ ՄԷՋ

Փետրուարեան ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Կիրակի, Փետրուար 21ին, ժամը 15ին Օհանջանեան ակումբին մէջ:

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Անի կոմիտէի :

Կը նախագահէ Ընկ. Հ. ՋԱՔԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժին : Խմբերգներ Նոր Սերունդի կողմէ: Մեներգ՝ Օր. Վ. Մուրատեան, Տիկին Ռըստիկեան, Տիկին Սիրարփի Փերսիքեան (Վալանսէն), կենդանի պատկեր՝ Հայր եւ որդի դէմ դիմաց : Շարժանկար՝ Սինէ Ղազօ :

Արտասանութիւններ՝ փոքրիկներ Տէլամեան, Բարսեղեան եւ ընկ. Յ. Մաթոսեան :

Պիւֆէ : Մուտքը ազատ է :

Հայկական մթնոլորտ :

×

### ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Փետրուար 18ի Համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի Մարտ 5ին, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս : (Ալհամպրայի սրահներու մէջ), հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէի եւ Մարսէյլի «Շաւարշ Միսաքեան» երիտասարդ. խումբին: Հանդէս եւ պարահանդէսով :

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Սիամանթօ խումբի կողմէ :

20 Փետրուար, Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ Պէրիէ - Միյէի շքեղ սրահներուն մէջ :

Գեղարուեստական բաժին, ընտիր նուագախումբ:

Ճոխ պիւֆէ եւ այլազան տեսակի խաղեր :

×

Նկատի ունենալ Հայկական երգի Փառատօնը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 17-ին, Կիրակի կէսօրէ ետք Փարիզի ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի կողմէ, ղեկավարութեամբ Կարպիս ԱՓՐԻԿԵԱՆի, Սալ Ռամոյի մէջ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ վարչութիւնը եւ հոգաբարձութիւնը հոգեհանգստեան պաշտօն կը կատարէ այս կիրակի օր, Սրբոց Ղեւոնդեանց տօնին առթիւ Փարիզի եւ շրջանի եկեղեցիներուն մէջ ծառայած վախճանեալ Տ. Գէորգ Արք. Իւթիւճեանի, Տ. Գրիգորիս Եպիսկ. Պալաքեանի, Յովի. Քհնյ. Հիւնքեարպէյէնտեանի, Սահակ Քհնյ. Իւթիւճեանի, Կոմիտաս Քհնյ. Սրպեանի, Բարնաբաս Քհնյ. Խընտամեանի, Աբիսողոմ Քհնյ. Թորոսեանի, Մեսրոպ Քհնյ. Մեսրոպեանի, Վահան Քհնյ. Խոյեանի, Բարթող Քհնյ. Թագմանեանի, Գարեգին Քհնյ. Տէօվլէթեանի, Մկրտիչ Քհնյ. Արսլանեանի, Գէորգ Քհնյ. Նիգամեանի, Ներսէս Քհնյ. Գանճեանի, Գրիգոր Քհնյ. Ճէպէճեանի, Յուսիկ Քհնյ. Ադամեանի, Գէորգ Քհնյ. Դաւիթեանի, Լեւոն Քհնյ. Արսլանեանի եւ Վարդան Քհնյ. Պաղտատլեանի հոգւոց հանգստեան :

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՇԱՐՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ի կեդր. վարչութեան կողմէ.

Դասախօսներ

Հ. ՍԱՄՈՒԷԼ, Կ. ՄԵՀԵԱՆ, Ա. ԻՍԱՀԱԿԵԱՆ եւ ուրիշներ

Այս դասախօսութիւնները վերապահուած են Հ. Յ. Դ. Նոր Սերունդականներուն :Արձանագրութիւնը պարտաւորիչ է :

## ԱՊՐԻԼ 11-24 Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ոգեկոչուի Ապրիլ 24ին :

Նախաձեռնութեամբ Ապրիլեան Սերունդի, Սալ Քատէի մէջ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Հայկանուշ Բարսեղեանի մահուան եւ Նշան Պաղտատեանի մահուան տարելիցին առթիւ Տէր եւ Տիկին Սերճանեան եւ Տէր եւ Տիկին Արապեան յիսունական Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան : (Ստանալ «Յառաջ»էն) :

### ԱՂՔԱՏԱԽՆԱՄ

Հրաւէր ընդհ. ժողովի եւ կոչ Թեկնածութեան

Փարիզի Հայ Աղքատախնամ Ընկերակցութեան Ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ երեքշաբթի, 22 Մարտ ժամը 20.30ին, 32 բիւ տը Թրէվիզ :

Կանոնագրի թիւ հինգ յօդուածին համաձայն վարչութեան մէկ երրորդը (հինգ անդամ) նորոգելի ըլլալով, Ընկերակցութիւնը կոչ կ'ընէ իր անդամներէն անոնց որոնք կը փափաքին մասնակցիլ վարչութեան :

Թեկնածութիւնները պարտին Աղքատախնամի գրասենեակը հասնիլ ամէնէն ուշը Մարտ ութին:

Առ այդ, փափաքողները պէտք է ընթեռնլի կերպով գրեն, տալով իրենց անունը, մականունը եւ հասցէն :

Թեկնածու կրնան ըլլալ միայն այն անդամները որոնք իրենց անդամավճարները կանոնաւորապէս վճարած են երեք տարիէ ի վեր :



Imprimerie Spéciale du Journal « Haratch »



### ՍՏԻՊՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ապրիլեան Սերունդի (Նախկին Զ. Ռ. Մ.) Փարիզի Կեդր. վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամ - անդամուհիները այս Երկուշաբթի գիշեր ժամը 21ին, Ռէժանի սրճարանի վերնայարկը : Կարեւոր օրակարգ : Բացակաները վերջնականապէս հրաժարեալ պիտի նկատուին :

### Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս պատշաճօրէն պիտի տօնուի Վարդանանց ազգային պատմական տօնը, յառաջիկայ Փետրուար 25ին, ժամը 10ին: Յետ պատարագի աշակերտութիւնը պիտի երգէ եւ արտասանէ օրուան պատշաճ կտորներ: Արարողութիւններուն պիտի նախագահէ Հայրապետական Պատուիրակ Սեբովբէ Եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ : Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջակայքի բոլոր վարժարաններու աշակերտութիւնը, ուսուցչական կազմը եւ հայ հասարակութիւնը :

### ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20.30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ:

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզատէի՝

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »

Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ :

պիտի հաշտեցնեն իրենց տեսակէտները եւ համաձայնութիւն գոյացնեն : Արդա - րեւ՝ Ամերիկացի պատուիրակը, Ուասթ - ըլըրթ, յայտարարած է թէ «հնարաւոր է ամուսնացնել երկու ծրագիրներն ալ» : Իր կարգին, Խորհրդային պատուիրակը, Զարուպին, անդրադառնալով Միացեալ Նահանգներու ներկայացուցած վերջին ծրագրին (Յառաջ, 13 Փետրուար), ըսած է «մեր առջեւ կը գտնենք ընդունելի կէ - տեր, կը թուի թէ ոչ միայն կը մօտենանք անգլիական տեսակէտներուն — հսկողութեանց եւ քննութեանց միջոցներու շուրջ — այլեւ Ամերիկեանին » :

ՈՒԹԵՐՈՐԴ անգամն ըլլալով յետաձգ - ուեցաւ Քարիլ Ջեսմանի մահապատիժին գործադրութիւնը : Քալիֆորնիոյ նահանգապետին այս որոշումը անուղղակի կերպով կապ ունի Այզընհաուըրի Քալիֆորնիա այցելութեան հետ. կը վախցուի թէ մահապատիժի գործադրութեան առթիւ ժողովուրդին մէջ ստեղծուած վատ տրամադրութիւններուն «զոհ» երթայ՝ նա - խագահը : Մահապարտին փաստաբաննե - րը կը յուսան թէ իրենց «յաճախորդը մահասենեակէն ներս երբեք մուտք պիտի չգործէ » :

ՄԱՄՈՒԼԻ «Թաս» գործակալութեան Փեքինի թղթակիցը կը հաղորդէ թէ 70 միլիոն Չինացիներ աշխատելու վրայ են Ջրելեկտրակայանի մը շինութեան հա - մար : 20 միլիառ խորանարդ հող «տե - ղահան » ըրած են :



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Կ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջանի ընկերները :

ԼԻՈՆ. — 26 Փետրուար Ուրբաթ գիշեր :
ՏԷՍԻՆ. — 27 Փետր. Շաբաթ գիշեր :
ՎԻԷՆ. — 28 Փետր. Կիրակի կէսօրէ վերջ:
ՍԷՆԹ ԷԹԻԷՆ. — 29 Փետրուար, Երկուշաբթի գիշեր :
ՍԷՆ ՇԱՄՈՆ. — 1 Մարտ, Երեքշաբթի գիշեր :
ՎԱԼԱՆՍ. — 2 Մարտ, Չորեքշաբթի գիշեր :
ԿՐԸՆՈՊԼԸ. — 3 Մարտ, Հինգշաբթի գիշեր :
ՄԱՐՍԷՅԼ. — 6 Մարտ, Կիրակի կէսօրէ վերջ :

Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը :

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը

### ԻՍԻԻ ՄԷՋ

Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի գինեձօն - խնջոյքով, Իսիի «Խըրիմեան» դպրոցին մէջ, Մարտ վեցին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին :

Առատ կերուխում 6 Ն. Ֆ.ով :

Մանրամասնութիւնները յաջորդով :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Պորտոյի Մուրատ խումբի կողմէ հանգանակուած ի նպաստ Մշակոյթի Տան Շ. Միսաքեան սրահին համար, Յունիս ամսոյ մէջ :

Ա. Քէնտէրեան յիսուն Ն. Ֆ., Ճ. Տօնիկեան երեսուն Ն. Ֆ., Շ. Գալթաճեան քսան Ն. Ֆ., Կ. Տօնէրեան քսան Ն. Ֆ., Պօղ. Քէնտէրեան երեսուն Ն. Ֆ., Կ. Հալաճեան քսան Ն. Ֆ., Ս. Տօնէրեան երեսուն Ն. Ֆ., Գ. Հալաճեան քսան Ն. Ֆ., Պետ. Քէնտէրեան երեսուն Ն. Ֆ., Ս. Գոնեալեան տասը Ն. Ֆ., Դ. Շաղլամճեան տասը Ն. Ֆ., Կ. Դաւիթեան երեսուն Ն. Ֆ., Ա. Մարգարեան տասը Ն. Ֆ., Յ. Ճոզիկեան տասը Ն. Ֆ., Ժ. Մարգարեան քսան Ն. Ֆ., Վարդ. Վարդանեան յիսուն Ն. Ֆ., Կ. Վարդանեան երեսուն Ն. Ֆ., Մառանճեան քսան Ն. Ֆ., Հ. Թաշճեան տասը Ն. Ֆ., Յ. Խաչատուրեան եւ Մ. Խաչատուրեան քսանական Ն. Ֆ. : (Գումար 490 Ն. Ֆ.) :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է, փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուէրները ողբ. Արամ Ասատուրեանի մահուան տխուր առթիւ :

Րիւ Թէյրասի հայ կօշկակարներէ երեսուն Ն. Ֆ.:

Նոյնպէս շնորհակալութեամբ ստացած է Պ. Քալէնտէրեանի ձեռամբ հետեւեալ նուէրները փոխան ծաղկեպսակի ողբացեալ Քերովբէ Ծոճեանի մահուան առթիւ.— Պ. Պ. Իլմաճեան, Քալէնտէրեան, Պօյաճեան, Կիչառ, Փեսքիէ, Քինէ, Տավուտ հինգական Ն. Ֆ.:

Նկատի ունենալ Հայկական երգի Փառատօնը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 17ին, Կիրակի կէսօրէ ետք Փարիզի ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի կողմէ, ղեկավարութեամբ Կարպիս ԱՓՐԻԿԵԱՆԻ, Սալ Ռամոյի մէջ (Լիոն) :



### ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապ. Խաչի Կրընոպլի մասնաճիւղը Տիկին Նազարեանի (ծնեալ Օնպաշեան) մահուան կսկծալի առիթով, իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Օնպաշեանին Պ. Նազարեանին եւ Տէր եւ Տիկին Թիւֆէնքճեանի, եւ փոխան ծաղկեպսակի քսան Ն. Ֆ. կը նուէր Մշակոյթի Տան, Յ. Օնպաշեան սրահին :

×

Կապ. Խաչի Կրընոպլի մասնաճիւղը Տիկին Նազարեանի մահուան տխուր առիթով, ի նպաստ իր դպրոցին՝ շնորհակալութեամբ ստացած է Պ. Նազարեանէ քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Թիւֆէնքճեանէ քսան Ն. Ֆ., ընկերուհի Օնպաշեանէ քսան Ն. Ֆ. :

×

Մարսէյլի Ամասիոյ Հայր. Միութեան վարչութիւնը յանուն իր շրջանի բոլոր հայրենակիցներուն, իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ փարիզաբնակ հայրենակից Տէր եւ Տիկին Յովհ. Գայսէրլեանի եւ զաւակներուն եւ ընտանեկան բոլոր պարագաներուն, իրենց որդւոյն եւ եղբօր երիտասարդ Պ. Արամ Գայսէրլեանի կսկծալի մահուան առթիւ, (զոհ ինքնաշարժի արկածի) :

Imprimerie Spéciale du Journal « Haratch »



### ՄՏԻՊՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ապրիլեան Սերունդի (Նախկին Զ. Ռ. Մ.) Փարիզի Կեդր. վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամ - անդամուհիները այս Երկուշաբթի գիշեր ժամը 21ին, Ռէժանի սրճարանի վերնայարկը : Կարեւոր օրակարգ : Բացակաները վերջնականապէս հրաժարեալ պիտի նկատուին :

### ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20.30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ :

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզատէի՝

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »

Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ :

### ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ռոպէր Ասատուրեան, յաջողութեամբ աւարտած է Մարսէյլի բժշկական համալսարանը եւ առաջին հանդիսած՝ Թիմոնի հիւանդանոցին էքթերնայի մրցումին :

Այս ուրախ առթիւ Տիկին Գեղանոյշ Քօպալեան տասը Ն. Ֆ. կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման :

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Շաւիլի Կրօնական Ընկերակցութեան կողմէ

Ի նպաստ Եկեղեցւոյ եւ դպրոցին

ՏԵՂԻՈՅՆ ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Կիրակի Մարտ 13, ժամը 15ին

Երգ, արտասանութիւն եւ պար դպրոցի աշակերտներուն կողմէ

Դաշնակի ընկերակցութեամբ Օր. ԱԼԻՍ ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆԻ

Ժողովուրդի խնդրանքին վրայ երկրորդ անգամ կը ներկայացուի

Շէյքսփիրի ԸՆՏԱՆԵՑԱԾ ՄԵԳԵՐԱՆ

Բեմադրութիւն՝ ՓԱՆՈՍԻԿ ՓԱՆՈՍԵԱՆԻ

Ժամը 8էն վերջ եւրոպական պարեր

ՊԻՒՖԷ ՄՈՒՏՔ 3 Ն. ՖՐԱՆՔ



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

**Les peuples qui chantent**

*Ժողովրդական երգի եւ պարի փառատօն, ի նպաստ Ֆրանսայի Ուսանողական Սանաթօրիօմներուն :*

Կիրակի, 13 Մարտ, ժամը 14·30ին Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ

*Բարձր հովանաւորութեամբ Փարիզի համալսարանի տեսուչ*

*Պ. ԺԱՆ ՍԱՐԱՅՅԻ*

*Նախագահութեամբ*

*ՏԻԿԻՆ ԺԱՆ ՍԱՐԱՅՅԻ*

*Կը մասնակցին՝*

Հայկական բաժին՝

Սօսի *պարախումբը ղեկավարութեամբ ՏԻԿ. ՅԱՍՄԻԿ ՔԻԻԹՆԵՐԵԱՆԻ եւ մասնակցութեամբ Պ. ՎԱՀԷ ՃԷՐԱՀԵԱՆԻ, նոր պարերով :*

Նայիրի *երգչախումբը, ղեկավարութեամբ ԳԷՈՐԳ ԵԱՆՊԷԿԵԱՆԻ նոր երգերով :*

*Դր. Պէռնար ՏԷՏԷՃԵԱՆ, իր նուագախումբով :*

*Ինչպէս նաեւ հետեւեալ երկիրներու ուսանողական եւ ֆօլքլօրական խումբերը՝*

Իսրայէլ, Լաօս, Լեթոնիա, Լիթուանիա, Հնդկաստան, Ճափոն, Մատակասքար, Մեքսիքա, Միացեալ Նահանգներ (*Ամերիկա*), Յունաստան, Չերքէսիա, Պրազիլիա, Վիէթնամ, Քամերուն, Քամպօճ :

*Գիները՝* 400 (4 Ն. Ֆ.), 300 (3 Ն. Ֆ.), 200 (2 Ն. Ֆ.), 150 (1·50 Ն. Ֆ.) :

*Դիմել Սորպոնի ղռնապաններուն :*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺԱՊԱՒԷՆՆԵՐՈՒ

*ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ*

*Այս երեքշաբթի ժամը 20·30ին Սինեմա* Գաթաքլան, 50 Պուլվար Վոլթէր : (Մէթրօ Օպէրքամփ) :

*Կազմակերպուած Հայ Ուսանողներու Օժանդակ Տիկնանց Միութեան կողմէ :*

*Կը ներկայացուի՝*

*ԱՌԱՋԻՆ ՍԻՐՈՅ ԵՐԳԸ*

*եւ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆ ՈՒ ՕԾՈՒՄԸ*

*Տոմսերու գին՝ 5 եւ 3 Ն. Ֆ. :*

*Տոմսերը կարելի է ապահովել եկեղեցւոյ գիւանէն եւ երեկոյթին օրը՝ սրահը :*





## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը

*ԻՍԻԻ ՄԷՋ*

*Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի գինեձօն – խնջոյքով, Իսիի «Խըրիմեան» դպրոցին մէջ, Մարտ վեցին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին :*

*Առատ կերուխում 6 Ն. Ֆ.ով :*

*Մանրամասնութիւնները յաջորդով :*

## ԱՊՐԻԼ 11-24 Ը

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Կ'ոգեկոչուի Ապրիլ 24ին :*

Նախաձեռնութեամբ Ապրիլեան Սեբունդի, *Սալ Քատէի մէջ :*

### *Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉ*

### *ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ*

*Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս պատշաճօրէն պիտի տօնուի Վարդանանց ազգային պատմական տօնը, յառաջիկայ Փետրուար 25ին, ժամը 10ին : Յետ պատարագի աշակերտութիւնը պիտի երգէ եւ արտասանէ օրուան պատշաճ կտորներ : Արարողութիւններուն պիտի նախագահէ Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ : Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջակայքի բոլոր վարժարաններու աշակերտութիւնը, ուսուցչական կազմը եւ հայ հասարակութիւնը :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այս Կիրակի առաւօտ յետ պատարագի, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի*

*ՀՌՈՌՈՄ ՏԷՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ*

*յիշատակին, մահուան քառասունքին առթիւ (մեռած՝ Մարսէյլ) :*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :*



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Կ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջանի ընկերները :*

*ԼԻՈՆ. — 26 Փետրուար Ուրբաթ գիշեր :*

*Յոյներու սրահին մէջ ժամը 20·30ին :*

*ՏԷՍԻՆ. — 27 Փետր. Շաբաթ գիշեր :*

*ՎԻԷՆ. — 28 Փետր. Կիրակի կէսօրէ վերջ :*

*ՍԷՆԹ ԷԹԻԷՆ. — 29 Փետրուար, Երկուշաբթի գիշեր :*

*ՍԷՆ ՇԱՄՈՆ. — 1 Մարտ, Երեքշաբթի գիշեր :*

*ՎԱԼԱՆՍ. — 2 Մարտ, Չորեքշաբթի գիշեր :*

*ԿՐԸՆՈՊԼԸ. — 3 Մարտ, Հինգշաբթի գիշեր :*

*ՄԱՐՍԷՅԼ. — 6 Մարտ, Կիրակի կէսօրէ վերջ :*

*Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը :*



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ, ԺԱՄԸ 16

### *Ա. Զ Դ*

*Այս Հինգշաբթի, Վարդանանց պատմական տօնին առթիւ, Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցիին մէջ հանդիսաւոր Ս. Պատարագ պիտի մատուցանէ Տէր Պ. քհնյ. Միրճանեան : Տօնակատարութեան կը մասնակցի դպրոցի աշակերտութիւնը :*

*Կը հրաւիրուին տեղւոյն հասարակութիւնը :*

### ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

### Ի ՆՊԱՍՏ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻՆ

### *ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ԵՒ ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ*

*Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին, Հինգշաբթի (Մարտ 10), ժամը 20·30ին, Պոմոնի Ֆլորէալ շարժասրահին մէջ :*

*Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Շիրվանզատէի՝*

*« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »*

*Ինչպէս նաեւ գեղարուեստական կարճ ժապաւէններ :*

*Պիտի ցուցադրուին նաեւ Հայաստանի այլ նշանաւոր ժապաւէններէ հատընտիր մասեր .—*

ԱՆՈՒՇ, ՕԹԷԼԼՕ, ԴԱՒԻԹ ԲԷԿ

*Տոմսերը նախապէս ապահովել հետեւեալ հասցէներէն .— Պետրոս Վանոյեան,* 325 Շըմէն տը Սէն Ժիւլիէն, *Սերժ Սարգիսեան,* 340 Շըմէն տը Սէն Ժիւլիէն, *Հացպործեան,* 15 Րիւ Լոնկ տէ Քափիւսէն, *Տօլպաչեան,* 23 Պուլ. տը Պօմոն :

*Նկատի ունենալ Հայկական երգի փառատօնը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 17ին, Կիրակի կէսօրէ ետք Փարիզի ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի կողմէ, ղեկավարութեամբ Կարպիս ԱՓՐԻԿԵԱՆԻ, Սալ Ռամոյի մէջ (Լիոն) :*

### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

## 29ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

*կազմակերպուած շրջանին երէցներուն, սկաուտներուն եւ գայլիկներուն կողմէ :*

Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2·30ին,

**SALLE DE LA CHIMIE, 28 bis Rue St. Dominique**

**Paris 7e, Métro Invalides**

Ներկայացումներ սկաուտներուն կողմէ, երգեր եւ պարեր, հայկական պարեր, կենդանի պատկերներ եւ խաղեր գայլիկներէն : Ֆրանսերէն կը ներկայացուի՝

*« ԹՌՉՈՂ ՀՈՎԱՆՈՑԸ »*

*կատակերգութիւն, խմբապետուհիներուն կողմէ :*

*Մասնաւոր պատրաստութեամբ եւ բեմադրութեամբ,* Նախկին Հայ Արիները կը ներկայացնեն, *հայերէն, Շէյքսփիրի հանրածանօթ կատակերգութիւնը :*

*ԸՆՏԱՆԵՑԱԾ ՉԱՏՈՒԿԸ*

**(La Mégère Apprivoisée)**

*Միրայօժար մասնակցութեամբ եւ օժանդակութեամբ*

Շաւիլի Երիտասարդաց թատերախումբին :

*Պիւֆէ, ցուցադրութիւն* — *Մուտք* 3 Ն. Ֆ. (300) *եւ* 5 Ն. Ֆ. (500)

*Թափանցել այս երկիրներէն ներս եւ կտրել անջատել վերոյիշեալ երկիրները Արեւմուտքէն ։ Այս ձեւով կը յուսան ոչ միայն պաշարել Արեւմուտքը, այլեւ խեղդել զայն ։ Այս ծրագիրը այսօրուան – վաղուան բան չէ, սակայն հիմակուընէ իսկ սկսած են աշխատիլ ։*

Հարցում․— *Կը կարծէ՞ք թէ ծայր տայ անհամաձայնութիւն մը՝ Փեքինի եւ Մոսկուայի միջեւ ։*

Փոլ Ռէյնօ․— *Առ այժմ ոչ, որովհետեւ, Փեքինի անմիջական նպատակն է՝ գրաւել Հարաւ․ Ասիան ։ Զգոյշ են նաեւ որ համայնավար երկու երկիրներ իրարու չբախին, ինչ որ պիտի նշանակէր դաւաճանել իրենց վարդապետութեան սկզբունքներուն ։*

*Սակայն, կրնայ գալ օրը, երբ Չինացիները ցոյց տալով Սիպերիոյ լայնատարած եւ անմարդաբնակ տարածութիւնը, Ռուսերուն ըսեն․— «Կենսական տարածութիւնս այստեղ է» ։*

—o—

ԿԻՊՐՈՍԻ *հերոսը, Գնդ․ Կրիվաս խըստիւ կը հակառակի եւ չուզեր որ նոր գիջում ըլլայ՝ Անգլիոյ ։ Մակարիոս Արք․ին դիրքը փափուկ է ։ Մէկ կողմէ վերջ տալ կ'ուզէ անիմաստ ձգձգումներուն, միւս կողմէ չի համարձակիր դէմ երթալ ծայրայեղ ազգայնականներուն ։*

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Հ․ Յ․ Դ․ Վալանսի «Քրիստափոր» Շրջ․ կոմիտէն, Ֆ․ Կ․ Խաչի վարչութիւնը եւ Հ․ Յ․ Դ․ Նոր Սերունդի «Շաւարշ Միսաքեան» խումբը, խորին ցաւակցութիւն կը յայտնեն, Տէր եւ Տիկին Կ․ Փօլատեանի եւ իրենց ընտանեկան բոլոր պարագաներուն Պ․* Յակոբ Փօլատեանի *տխուր մահուան առթիւ ։*

×

*Վիէնի Անի կոմիտէն, Հ․ Յ․ Դ․ Նոր Սերունդը եւ Ֆ․ Կ․ Խաչը իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն Տէր եւ Տիկ․ Մուշեղ եւ Քնարիկ Մուրատեաններուն եւ իրենց զաւակներուն, Հայաստանի մէջ մեռած իրենց եղբօր աղջկան կսկծալի մահուան առթիւ ։*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այս Կիրակի առաւօտ յետ պատարագի, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի*

*ՀՌՈՌՄ ՏԷՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ*

*յիշատակին, մահուան քառասունքին առթիւ (մեռած՝ Մարսէյլ), Փարիզի Ս․ Յովհ․ Մկրտիչ եկեղեցւոյ մէջ ։*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները ։*

### ԱՂՔԱՏԱԽՆԱՄ

Հրաւէր ընդհ․ ժողովի եւ կոչ Թեկնածութեան

*Փարիզի Հայ Աղքատախնամ Ընկերակցութեան Ընդհ․ Ժողովը տեղի պիտի ունենայ երեքշաբթի, 22 Մարտ ժամը* 20·30ին, 32 րիւ տը Թրէվիզ ։

*Կանոնագրի թիւ հինգ յօդուածին համաձայն վարչութեան մէկ երրորդը (հինգ անդամ) նորոգելի ըլլալով, Ընկերակցութիւնը կոչ կ'ընէ իր անդամներէն անոնց որոնք կը փափաքին մասնակցիլ վարչութեան ։*

*Թեկնածութիւնները պարտին Աղքատախնամի գրասենեակը հասնիլ ամէնէն ուշը Մարտ ութին ։*

*Առ այդ, փափաքողները պէտք է ընթեռնլի կերպով գրեն, տալով իրենց անունը, մականունը եւ հասցէն ։*

*Թեկնածու կրնան ըլլալ միայն այն անդամները որոնք իրեց անդամավճարները կանոնաւորապէս վճարած են երեք տարիէ ի վեր ։*

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Գրիգոր Տալվաշեան, հօրը անունը Յովհաննէս, որ անուշելինի պատրաստութեամբ զբաղած է, կը փնտռուի իր եղբօր կողմէ ։ Տեղեկացնել Պ․ Գաբրիէլեանի,* 385 Րիւ տը Լիոն, Մարսէյլ ։

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՎԱԼՊԱՌԵԼԻ *Հ․ Յ․ Դ․ Արամ խումբի ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 10ին, սովորական հաւաքատեղին ։ Պարտաւորիչ ներկայութիւն ։*

*Հ․ Յ․ Դ․ ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Կ․ Կոմիտէն ընկերական ընդհ․ ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջանի ընկերները ։*

ՎԻԷՆ․— 28 *Փետր․ Կիրակի կէսօրէ վերջ ։*

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ․— 29 *Փետրուար, Երկուշաբթի գիշեր ։*

ՍԷՆ ՇԱՄՈՆ․— 1 *Մարտ, Երեքշաբթի գիշեր ։*

ՎԱԼԱՆՍ․— 2 *Մարտ, Չորեքշաբթի գիշեր ։*

ԿՐԸՆՈՊԼԸ․— 3 *Մարտ, Հինգշաբթի գիշեր ։*

ՄԱՐՍԷՅԼ․— 6 *Մարտ, Կիրակի կէսօրէ վերջ ։*

*Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլայ Կ․ Կ․ի ներկայացուցիչը ։*

*Հ․ Յ․ Դ․ Մարսէյլի Շրջ․ Կոմիտէն ընդհ․ ժողովի կը հրաւիրէ Կառտանի «Նիկոլ – Դուման» խումբի ընկերները, այս Կիրակի կէսօրէ վերջ ։*

*Ներկայ պիտի ըլլան Շրջ․ Կոմիտէի ներկայացուցիչները ։*

*Հ․ Յ․ Դ․ Մարսէյլի Շրջ․ Կոմիտէն ընկերական ընդհ․ ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները,* 6 *Մարտ, Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Ահարոնեան ակումբին մէջ ։*

*Սոյն ժողովին ներկայ պիտի ըլլայ Կ․ Կոմիտէի ներկայացուցիչը ։*

### ԴՊՐՈՑԱՍԷՐԻՆ ՀԱՄԱՐ

*Օգնական խոհարարուհիի մը պէտք կայ ։ Հեռախօսել* 927 – 01 – 72 ։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Կրօն․ Ընկերակցութեան վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները․— Պ․ Նորայր Սահաթճեանէ հարիւր Ն․ Ֆ․, իր ողբացեալ քրոջ Օր․ Արուսեակի մահուան տարելիցին առիթով ։ Պ․ Նուպար Տէր Մինասեանէ յիսուն Ն․ Ֆ․, իր որդւոյն Պ․ Ժան Ժոզէֆի ամուսնութեան առիթով ։*



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը

### ԻՍԻԻ ՄԷՋ

*Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի գինեձօն – խնջոյքով, Իսիի «Խըրիմեան» դպրոցին մէջ, Մարտ վեցին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին ։*

*Առատ կերուխում 6 Ն․ Ֆ․ով ։*

*Մանրամասնութիւնները յաջորդով ։*

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*Փետրուար 18ի համաժողովրդական ապստամբութեան 39րդ տարեդարձը կը տօնուի արժանավայել կերպով «Ահարոնեան» ակումբը, Մարտ 12, Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին ։*

*Մանրամասնութիւնները յաջորդով ։*



### ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԱՐԱԳ

*Եւ ներբող յաւուր պատշաճի, Լը Փէքի Հայ Ընծայարանին մէջ ։ Կիրակի 28 Փետրուար՝ ժամը 16·30ին ։ Կը նախագահէ Գերպ․ Հ․ ԿԱՐԱՊԵՏ Վ․ ԱՄԱՏՈՒՆԻ ։*

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը ։

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Վիէնի մէջ կազմակերպուած Հ․ Յ․ Դ․ Անի կոմիտէին կողմէ, Փետրուար 28ի կիրակին, կէսօրէ վերջ, ժամը երեքին, Օհանջանեան ակումբին մէջ ։*

*Կը խօսի՝ Ընկ․ ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ*

*Կը հրաւիրուին Վիէնի եւ շրջանի հայութիւնը ։*

*Յ․ Գ․— Բանախօսութենէն վերջ ընկերական ընդհ․ ժողով ։*

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*« ՎԱՐԴԱՆԱՆՑ »Ը*

*Կը ներկայացուի Առնուվիլի Հ․ Յ․ Դ․ Նոր Սերունդին կողմէ ։*

Ապրիլ 3ին

×

Նախկին Սամաթիացիներու տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ Ապրիլ 10ին, կիրակի, Ամպասատէօրի շքեղ սրահներուն մէջ ։ Մանրամասնութիւնները յաջորդով ։

### Հ․ Կ․ ԵՒ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ԺՈՂՈՎԸ

*Միութեան յետաձգուած ընդհ․ ժողովը տեղի պիտի ունենայ Փետրուար 28ի կիրակին ժամը 3ին, իր կեդրոնատեղին մէջ,* 32 Րիւ տը Թրէվիզ ։ *Միեւնոյն օրակարգով ։*

